# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
# № 2 ● 1985

Լույս է տեսնում 1923 թվականից



Շապիկի 1-ին էջը՝
ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ

# Դուք՝ ձյան փաթիլներ

Դուք՝ ձյան փաթիլնե՛ր, սպիտա՛կ գառներ,
Գալիս ծածկում եք դաշտեր ու լեռներ,
Որ ձեր կրծքի տակ, հայրենի հողում,
Նիրհեն ապահով ծիլեր ու ցողուն:
Որ հենց գարունն իր սրինգը փչի,
Ձեր երգը խառնեք կարկաչին առվի,
Որ ձմռանն էլի գառնուկներ դարձած
Գաք, կրկին ծածկեք դաշտեր ու լեռներ:
Ձեզ կյանք ու արև, ձեզ ողջույն ու սեր,
Դուք՝ ձյան փաթիլնե՛ր, սպիտա՛կ գառներ:



ՀԱՍՄԻԿ ՂՈՒԿԱՍՅԱՆ
Երևանի № 133 միջն. դպրոց,
8-րդ դասարան

Քնքուշ ու նուրբ խառնվածք ունի Հասմիկը, բարեսիրտ է, նրբազգաց, մի բան, որ օգնում է նրան ստեղծելու բընության գեղեցիկ պատկերներ: Ամեն ծաղիկ նրա համար մի նոր սիրտ է, հոգի ու աշխարհ: Դեռ ցածր դասարաններից զգացվում էր գեղեցիկը ըստեղծելու նրա ձգտումը: Հասմիկը իր հայրենիքին, նրա քաջարի ու ստեղծագործ զավակներին սիրահարված աղջիկ է...

Ջ. Մ. ԿԱՐԾԻԿՅԱՆ
հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի

# Աշնան տերևներ

Աշնան տերևներ՝ չքնաղ, բազմագույն,
Օ՜, դուք մարգարտյա մանյակներ սիրուն,
Փիրուզյա ցողով շղարշված թևեր,
Հոգնած ծառերին հպված եք թեթև:

Եվ դուք, բազմաչյա զանգակներ անուշ,
Ձեր զարդաժպիտ տեսքով զովաշունչ,
Հաստատ, ուզում եք ձեր վերջին պահին
Թարմ ու թովիչ կյանք տալ մեր աշխարհին:

Երբ ժամն է գալիս ձեր էլ վայրէջքի,
Օդում թողնելով անտես հետագիծ,
Պոկվում եք անահ, ճախրում դեպի ցած՝
Ասես երկնային ձիուկներ խրտնած:

# Անձրևից հետո

Կապույտ երկնքին իջել է մի քող,
Արևը դարձել է լուսնի պես պղտոր,
Ծառերն են խշշում, պարում են տեղում,
Նոր օրվա գալն են նրանք ողջունում:

Թեթև ամպերից անձրև է մաղել,
Ծաղկի թերթերին իջել է նոր ցող,
Քնքշաբույր ծաղկին մեղուն է գրկել,
Զեփյուռն էլ նրանց ասում է օրոր...

# Արևածագ

Ցողը տերևին կարոտով փարվեց,
Ու ամեն թռչուն առույգ ճռվողեց:
Արփին սքողեց աստղունք ու լուսին
Եվ ինքը ժպտաց ուրախ, ցնծագին:
Արևը հպվեց երկնքին կապույտ
Ու դիզեց շողի ցնծագին մի կույտ:
Թիթեռը բացեց թևերը շարժուն,
Ինչպես հովանոց՝ սիրուն, զմայլուն:
Ծառը խշխշաց, արթնացավ քնից՝
Արբած բնության բուռն զարթոնքից:
Արև՜ է, արև՜, արևով հեղեղ.
...Արևածա՜գ է արդյոք ամեն տեղ:

# Հույս

Անհետ կածանով մութն է իջնում,
Փեշի տակ առնում մի ողջ բնություն,
Մեղմիկ շրշյունով երգ է շշնջում
Լուսինն աստղերին՝ պաղ ու սառնարյուն...

Քամին է քնել բարի երազով,
Թարմ ու սավառնուն ժպիտ ունի նա,
Ծաղիկներն անշուշտ քնել են հույսով,
Մինչև արևը վերում կցոլա...

## Հայաստան

Հայաստա՛ն աշխարհ,
Սիրված մայր ջահել...
Ինչքան էլ նեղվել,
Դու չես կորցրել
Քո գույնը վառման:
Դու չես կորցրել
Կամքդ անվեհեր
Կռվի դաշտերում...
Կանգնած ես հիմա
Վեհաշուք, անշեղ,
Ինչպես ծաղիկ նոր`
Արևով օծված
Դու նոր առավոտ`
Դու, իմ Հայաստա՛ն,
Հայաստան ահել,
Բայց և միշտ ջահել:
Ուրախ ենք` մերն ես,
Քոնն ենք հավիտյան...

## Ծաղիկներ եմ հավաքում

Ծաղիկներ եմ հավաքում,
Ցողոտ, շաղոտ ծաղիկներ,
Արևի շողք չկպած
Անուշաբույր ծաղիկներ:
Ու երգում եմ բարձրաձայն...
Ելևէջներն իմ երգի
Թևածում են երկնքում,
Թերթերի մեջ ծաղկունքի:
Ջուլալ ցողն է ժպտում դեռ
Ծաղկի նրբին թերթերին,
Թիթեռն արդեն թևաբաց
Լուռ ժպտում է ծաղկունքին:
Ծաղիկներ եմ հավաքում,
Ցողոտ-շողոտ ծաղիկներ,
Արևի շողք չկպած
Անուշաբույր ծաղիկներ:

ՌՈՒԲԵՆ ՄԱՐՈՒԽՅԱՆ

# Պատերազմը եկավ մեր տուն

Նկ. ՖԵԼԻՔՍ ԳՅՈՒԼԱՆՅԱՆ

Ցուրտ է: Վառելիք չունենք:

— Անտեր ցրտերն ի՞նչ շուտ ընկան: Առավոտյան գնանք քարածխի,— ասում է մայրս:

— Դպրոց չե՞մ գնալու:

— Դու հերթ կպահես, մինչև ես աշխատանքից վերադառնամ:

***

Ձմեռնամուտի գետնաասող քամին ավլում է փողոցի փոշին ու լցնում անցորդների աչքերը: Քամին ձյան համար տեղ է մաքրում:

— Ամբողջ ճանապարհը քնած եկար... աչքերդ բաց, հասանք... Նայիր. ինչքա՞ն մարդ կա,— թախանձանքով ասում է մայրս, ձեռքիցս քաշելով:

Ես բացում եմ աչքերս: Պատերի տակ հուլունքի պես շարվել են ցրտածեծ մարդիկ ու սպասում են:

— Ո՞վ է վերջինը,— հարցնում է մայրս:

— Էնտեղ հարցրեք:

— Խնդրում եմ` ասեք, ո՞վ է վերջինը:

— Ա՜յ, էն սապոգներով պառավն է:

— Նա չէ։

— Բա ո՞վ է։

— Էն քարն է։ Մի ծերունի իր փոխարեն դրեց, գնաց, հիմա կգա։

— Տղաս է, թող հերթ պահի մինչև ես կըգամ,— ասում է մայրս։

— Թող կանգնի, մենք էստեղ ենք, կնայենք,— ասում է սմքած մի պառավ։

— Խնդրում եմ ուշադրություն դարձնեք, հայրը ռազմաճակատում է...

— Հիմա բոլորն էլ ռազմաճակատում են։

— Ա՜խ, աստվա՛ծ, ե՞րբ է վերջանալու էս բոլորը,— հառաչում է սմքած պառավն ու փաթաթվում սև շալի մեջ։

— Դե, դու մնա... ես գնամ... — ասում է մայրս, համբուրում ինձ ու գնում։

Կեսօրին հուլունքաշարը մի քիչ կարճացավ։ Չգիտեմ, հոգնությունից թե քաղցից, ես լաց եղա։ Մի ծերուկ բռնեց ձեռքս, ինձ տարավ քարածուխի պահեստների ներսը։

— Առաջին հերթին սա պետք է քարածուխ տանի,— բղավում է ծերունին ինքն իրենից ելած ու հայհոյում, թե ո՞ւմ, չգիտեմ։

Ես չհասկացա, թե ինչ կատարվեց, դարձյալ ինչ ասաց ծերունին, որ բոլորը խառնըվեցին իրար, ինչ-որ մարդիկ քարածուխ լցրեցին հին ու մաշված բեռնավորի թափքը, ինձ նստեցրեցին վարորդի կողքին ու ասացին.

— Ձեր տան տեղը ցույց տալ կարո՞ղ ես...

— Կարող եմ...

Վարորդը ծաղկատար դեմքով մարդ էր, անունը՝ Սարգիս, նայեց ինձ, գլուխը տարուբերեց, հառաչեց։

— Եթե էդ ծերուկը քեզ չօգներ, ճուտո ջան, մինչև գարուն էստեղ կանգնած կմնայիր։ Է՜, սա կյանք չէ... ո՛չ հաց կա, ո՛չ վառելիք, ո՛չ հագնելիք... Օճառն ի՞նչ է, օճառ էլ չկա։

Վարորդն ասաց ու փոշմանեց.

— Սա ես չեմ ասում, է՜, շանորդիներ կան, որ ասում են... Չէ, տղաս, ամեն ինչ լավ է, հաց էլ կա, շոր էլ կա, տեսնում ես՝ քարածուխ էլ կա... Հորդ անունը ի՞նչ է։

— Արամ։

— Ծանոթ անուն է, որ տեսնեմ, երևի կըճանաչեմ։ Ինչ-որ է, կարևորը քարածուխն է, որ եղավ։ Մարդու տունը, որ տաք լինի, մի կերպ ձմեռը կհանի։ Ձախ թեքվե՞մ, թե՞ աջ։

— Աջ թեքվիր ու մտիր բակը,— ասում եմ ու ցույց տալիս մեր բակը։

Ես ու վարորդը քարածուխը թափում ենք մեր ցախատան առաջ։ Վարորդը մնաս բարով է ասում ու գնում։

Ես ոտից գլուխ մրոտվել եմ։ Երբ մայրս աշխատանքից գա, երևի ինձ չճանաչի,— մըտածում եմ ես ու նստում ցախատան դռան մոտ դրված քարին։ Մեր բակի բողարը ուրախ-ուրախ նայում է երեսիս, կլանչում ու լուռ նստում կողքիս։ Ձմեռնամուտի արևի հանգչող շողերը տաքացնում են մրսած մարմինս, ու ես ննջում եմ։

— Վա՜յ, խե՜ղճ տղաս, տանջվա՜ծ տղաս,— կարծես երազի մեջ լսում եմ մորս ձայնը։

Արթնանում եմ, ես ու մայրս քարածուխը լցնում ենք ցախատուն, դուռը փակում ու սենյակ գնում.

— Այս հաց ու պանիրը կե՛ր,— մի կտոր հաց ու պանիր ինձ տալով՝ ասում է մայրս ու վառում վառարանը։

Աշխարհի ամենահամով բանը հաց ու պանիրն է։ Կծում ես հացը, հետո պանիրը ու ծամում։ Շատ է համով։ Միայն պանիրը քիչ-քիչ պետք է կծել, որ հացի հետ հավասար վերջանա, թե չէ ստիպված ես հացի մնացած կտորը առանց պանրի ծամել։

— Ջուրը տաքացել է,— ասում է մայրս։

Ինձ՝ տան միակ տղամարդուս, մայրս մերկացնում է ու տաք ջուրը լցնում գլխիս։ Մի դույլ ջուրն ինձ մաքրում է աղտոտությունից, ու ես քնում եմ մաքուր, տաք անկողնում և երազումս քարածուխի սարեր եմ տեսնում՝ սև, պսպղուն սարեր...



— Տղա՛ս, մայրդ տա՞նն է,— հարցնում է քթի ծայրին ակնոց դրած փոստատարը ու երկար նայում ինձ։ Առաջ ես նրան չէի ճանաչում, հիմա անունն էլ գիտեմ։ Գիտեմ, որ նա եկել է Կարին քաղաքից, որտեղ ուսուցչություն է արել։ Գիտեմ, որ նրան բոլորն են սպասում մեր թաղում, բոլորը։ Գիտեմ, որ նա իր հետ բերում է եռանկյունի ծալծլված թղթեր (որոնք կոչվում են նամակ) և ուրախություն պատճառում բոլոր նրանց, ում հարազատները գտնվում են ռազմաճակատում։ Փոստատարը բարի է, ինչպես լուսաբացի արևը և տխուր՝ ինչպես աշնան մայրամուտը։ Նա ակնոցը միշտ քթի ծայրին է դնում ու միշտ ժպտալով ասում է.

— Վաղն ավելի լավ է լինելու, համբերեք։

— Ինչո՞ւ մենք նամակ չենք ստանում,— հարցնում եմ ես նրան։

— Դու կարդալ գիտե՞ս, տղաս,— տխրամած աչքերով ինձ նայելով, հարցնում է փոստատարը։

— Ես անգիր գիտեմ այբուբենը։

— Իմ խելոք, աչքաբաց տղա,— ուրախա-



նում է փոստատարը , մեջքը պատին հենելով նստում՝ հավասարվում իմ հասակին: Ակնոցի ապակու միջից ես տեսնում եմ նրա աչքերը, արցունքի երկու խոշոր կաթիլ խորշոմած այտերի վրայով գլորվում են ցած:

— Համբերություն ձեզ... — մրմնջում է նա, ինչ-որ բան է խցկում գրպանս, վեր է կենում, առանց ետ նայելու գնում: Ոչ, չի գնում, փախչում է...

Երեկոյան բոլոր հարևանները գալիս են մեր տուն, նստում, նայում իրար երեսի, նայում մորս, ինձ, խորը հառաչում ու լռում:

Սեղանի վրա դրված է փոստատարի տըված թուղթը: Լռել է քամին, անձայն դողում են ծառերը, առվակները պապանձվել են:

Մորս շուրթերը կապտել են: Նա փակել է աչքերն ու անձայն լալիս է: Սեղանի վրա դրված թղթի կտորը սև չէ, բայց ինչո՞ւ են բոլորը նրան «սև թուղթ» ասում:

— Իմ քրոջ որդու «սև թուղթն» էլ էր եկել, սուտ դուրս եկավ: Մի քանի օր հետո նրանից նամակ ստացանք, նկար կար մեջը: Էս «սև թուղթը» սուտ է, դուք էլ մի՛ հավատացեք, մի օր էլ ձեզ բարի լուր կգա,— ասաց ապակեգործ Թորգոմը:

— Իհարկե: Աստված համբերություն տա: Դու տղային նայիր, տեսա՞ր քարածուխը ոնց բերեց:

Բոլորը տխուր աչքերով նայեցին ինձ ու ժպտացին:

— Բա, տեսա՞ր քարածուխը ոնց բերեց,— ձայնեցին ամեն կողմից:

Մայրս էլ նայեց ինձ, ու ինձ թվաց, թե արցունքների միջից նա է՛լ ժպտաց:



ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# Մի տղա շվի էր փչում

Մի տղա մի քարի նստած,
Բացատում շվի էր փչում:
Նոր տեսա թեև ես նրան,
Թվաց՝ վաղուց եմ ճանաչում:

Մոտեցա ես լուռ, նստեցի
Նոր ծլող կանաչի վրա:
Ինձ նման՝ արջուկն էլ եկավ,
Կլանված նվագով նրա:

Նայեցի ծառերին մոտիկ՝
Ճյուղերին, օ՜, հազար թռչուն:
Եվ տեսա՝ իմ կողքին պառկած
Հանույքից հալվող բյուր մրջյուն:

Ապշեցի՝ մրջյունը անգործ
Գա ու մեկնվի կանաչի՞ն...
Կամ ո՞վ է տեսել նապաստակ,
Որ արջից հեռու չփախչի:

Սակայն բոլորը լուռ էին,
Շվին էր քաղցրաձայն հնչում
Եվ... հրաշք. կանաչը շուրջբոլոր
Աչքիս դեմ աճում էր, աճո՜ւմ:

Վեր ելա իմ նստած տեղից,
Որ կանաչն այնտեղ էլ աճի...
Խեթ-խեթ հայացքներ ինձ վրա
Նետեցին ձախից ու աջից:

Բայց ուշ էր... նվագն ընդհատվեց:
Նայեցի՝ տղան էլ չկար...
Արևոտ բացատն էր իմ դեմ
Եվ ծաղկող ու շնչող մի քար:

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՁՕՂԼՅԱՆԻ

ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 19. ՍԱՏԱՆԻ ԿԱՄՐՋԻ ՏԱԿ

Սատանի կամուրջը, որը գտնվում է Որոտանի վրա՝ Տաթևի ճանապարհին, Հայաստանի բնության ամենազարմանալի ստեղծագործություններից է: Գետի երկու կողմերից բխած հանքային աղբյուրների նստվածքները, բարձրանալով և իրար միանալով, ստեղծել են մի բնական կամուրջ:

Ահա թե ինչպիսի հսկայական քանակությամբ աղեր էին դուրս եկել լեռների ընդերքից: Նրանց տեղը անշուշտ դատարկություններ էին առաջացել: Հավանաբար հենց այդ դատարկություններն էին Սատանի կամրջից ոչ հեռու գտնվող Սյունյաց Մեծ անապատի անսպասելի կործանման պատճառը:

Առաքել Դավրիժեցին, որը այդ դեպքի ժամանակակիցն էր, այսպես է նկարագրում. «Անապատի շինությունից մի քառասունհինգ կամ ավելի տարիներ անցնելուց հետո Անապատի արևմտյան կողմի գետինը ճեղքվեց դեպի հյուսիսային ուղղությամբ և հասավ մինչև արևմտյան կողմը՝ դիմացի լեռնաժայռը: Իսկ արևմուտքից անցնելով գերեզմաններից, հասավ մինչև լեռան արևմտյան կողմը և այնքան ճեղքվեց, որ երբեմն եզ, ձի կամ այլ անասուններ ընկնում էին պատռվածքի խորքը և դուրս գալ չէին կարողանում, բացի դրանից այլևայլ ճեղքվածքներ էին լինում տարբեր տեղերում...

Մեր թվարկության 1107 թվի (1658 թ.) ապրիլին գարունը եղավ անձրևային և ճեղքվածքները սկսեցին օր օրի լայնանալ, և բոլորը հուսահատվեցին այն մտքից, թե այսօր կամ վաղը հասնելու է անապատի ստորին գետինը: Եվ աշխարհամատյան կիրա՛կի օրը, ապրիլի 25-ին, երեկոյան, արեգակի մայրամուտին գետինն սկսեց ճեղքվել Անապատի հարավային կողմից և լեռան բարձունքից սկսած մրրկածուփ ամպի նման սկսեց ցած հոսել ահռելի դղրդոցով, թնդյունով, որոտով և ճայթյունով, ինչպես կայծակնացած ամպրոպի որոտ և այնքան ուժգին, որ Շինուհեր և Հալիձոր գյուղերի բոլոր բնակիչները լսելով այդ ձայնը դուրս ելան իրենց տներից դիմացի տեղերը և դիտում էին այդ արհավիրքը: Որովհետև հավիտյանից հաստակառույց լեռնային քարերը իրենց-իրենց ճեղք-

վելով և իրար բախվելով տրոհվում էին և ամենասկզբնական կառուցվածքն ու գետնի հիմք կազմող քարերը եռալով գետնի երես էին դուրս գալիս և տներն ու բազմամյա ծառերն ու ընկուզենի կամ կաղնի, նրանց հետ նաև մեծամեծ քարաժայռեր սուզվելով դեպի անդունդ անհետանում էին: Եվ լեռներից հսկա քարեր պոկվելով իրար հետևից ցած էին գալիս, որոնք իրար բախվելով փշրվում, խորտակվում էին...»

Այս ահռելի փլուզումը մի քանի ժամով կանգնեցնում է Որոտանի ընթացքը և մասամբ կործանում Սյունյաց Մեծ անապատը:

Սյունյաց Մեծ անապատի կործանումը և նրա շրջակայքում առաջացած վիհերն ու ճեղքերը հետաքրքրեցին մեզ և մենք որոշեցինք գտնել այդ անհայտ քարայրները: Գնացինք Տաթևի ձորը՝ Սատանի կամրջի մոտ: Այնտեղ, ուր Որոտանն իր անունը արդարացնող աղմուկ-աղաղակով անհետանում էր գետնի տակ, ժայռերից քարե գունագեղ ջրվեժներ էին կախված: Իսկ այնտեղ, ուր գետը դուրս էր գալիս գետնի տակից, քարանձավի առաստաղից կախվել էին իրար հյուսված ու խճճված շիթաքարեր: Ուշադիր նայեցինք և տեսանք, որ դրանց գոյացումը կապված է կամրջի վրա աճող եղեգի և այլ խոտաբույսերի արմատների հետ: Արմատները ներքև թափանցելով շիթաքարերի առաջացման հիմք են դարձել: Այնտեղ նույնիսկ գետափին, խոտի ցողունների վրա էին պսպղում ցողի նըման փայլուն բյուրեղները:

Այնտեղ, ուր Որոտանը անհետանում էր Սատանի կամրջի թունել-քարանձավում, քարերն այնքան լպրծուն էին, որ մի անզգույշ քայլը բավական էր գետնի տակ որոտացող ջրերի մեջ անհետանալու համար: Տեղացիները մեզ պատմեցին, որ խորհրդավոր թունել-քարանձավի գաղտնիքներով հրապուրված շատերն են սայթաքել ու իրենց մահը գտել կամուրջ-քարանձավի սառը ջրերի մեջ:

Որոտանի ջրերը արդյոք մինչև կրկին լույս աշխարհ դուրս գալը չե՞ն ճամփորդում ստորերկրյա քարայրներով: Այդ հարցին միայն մի ձևով կարելի է պատասխանել. մտնել կամրջի երախը: Այդ գործը փայլուն կերպով գլուխ բերեց Վ,անոն՝ Ղոռադարայի քարայրները հետազոտողը և Յաշխանի այրի հայտնաբերողներից մեկը: Նրա մանկությունը անցել էր Սևանի ափին, ու նա չէր վախեցել Որոտանի ահեղ ջրերի մեջ սուզվելուց: Եվ մեկ էլ այնքան անհամբեր էր, որ չէր սպասել մինչև մենք կարգին նախապատրաստվեինք մեզ համար բոլորովին նոր բնույթի այդ արշավին: Վերցրել ու մեկնել էր տղաներից մի երկուսի հետ:

Ահա թե ինչ պատմեց նա գետնի տակ կատարած այդ խելահեղ ճամփորդության մասին.

«Քարանձավ մտնելն ավելի հարմար է հոսանքին հակառակ ուղղությամբ, քանի որ նրա մուտքերը տարբեր մակարդակների վրա են գտնվում և ներքևից վերև բարձրանալը ավելի հեշտ է: Քարանձավի մուտքի բացվածքը շատ լայն է ու բարձր: Մթությունը և ջրի աղմուկը սարսափազդու են, և մարդ ակամա հիշում է ժողովրդական հրաշապատում լեգենդները:

Բոլորիս մեջ ծնվեց այն միտքը, որ սա մեր կյանքի ամենանշանակալից և միաժամանակ վտանգավոր պահերից մեկն է լինելու:

Սկզբում սարսափելի էր, քանի որ չգիտես մյուս կողմից դու՞րս ես գալու, թե՞ ոչ: Մեզ պատած սարսափը ներս մտնելուց անմիջապես հետո փոխվեց զարմանքի: Պատերը ծածկված էին ջրաբույսերով, որոնք իրենց գեղեցկությամբ, գունագեղությամբ և հյուսվածքներով հիշեցնում էին մեր գորգերը: Ուշադիր զննելուց հետո պարզվեց, որ նրանք աճում են առաստաղից և իջնում մինչև հատակը: Պատերը խոնավ էին, տեղ-տեղ կային ջրի բարակ շիթեր, որոնք ծլծլալով կամաց իջնում էին ներքև, առաջացնելով դեղնավուն գծեր: Դրանց վրա ջրաբույսերն ավելի գեղեցիկ էին երևում:

Վերևում, որտեղից իջնում էին բույսերը, իրենց գույնով ու գեղեցկությամբ չէին զիջում շիթաքարերին:

Ճանապարհի այդ հատվածից հետո ավելի է մթնում և գետը խորանում է: Քարանձավի մթությունն ու ջրի սառնությունը աստիճանաբար սկսում են մեջդ սարսափ առաջացնել, և ճանապարհը ավելի երկար է թվում: Եղավ պահ, որ կանգնեցինք և մտածեցինք ետ դառնալ: Բայց քարանձավը կարծես կախարդել էր մեզ և իր մոգական ուժով առաջ մղեց: Քայլելը սարսափելի դարձավ, թվում էր, թե հաջորդ քայլդ անդունդ է տանելու: Այդ պատճառով սկսեցինք լողալով անցնել: Լողում էինք պատերին շատ մոտ, համարյա նրանց քսվելով, որ հանկարծ չսխալվենք:

Վերջապես երևաց մի հարթակ, որ հիշեցնում էր հին Խնձորեսկի աստիճանաձև կըտուրները: Բնությունը հիանալի պայմաններ էր ստեղծել հանգստի համար: Գետնի վրա ավելի հաստատուն ենք զգում մեզ: Այստեղ նաև տաք էր: Պատճառը վերևից թափվող տաք ջրերն էին, որոնց կաթոցների տեղե-

րում առաջացել էին տաշտակների նման կլոր-րավուն փոքրիկ փոսեր: Սառած մարմինն անմիջապես զգում է այդ տաքությունը, և նոր միայն ամեն ինչ պարզվում է՝ վերևից տաք ջուր է կաթկթում:

Շատ հաճելի էին տաք վաննաները, բայց ստիպված էինք դրանք լքել: Նոր հրաշալիքներ էին մեզ սպասում: Շարունակում էինք մեր ֆանտաստիկ ճանապարհորդությունը: Գնալով քարանձավը նեղանում է, մթնում: Մենք նորից ստիպված ենք լինում լողալ: Մեզ աստիճանաբար հույս է տալիս հեռվից երևացող թույլ լույսը, որը ֆանտաստիկ պատկերներ է ծնում: Լույսի թույլ շողերը քարանձավ ընկնելով՝ ստվերներ են ձգում, տալով նրանց գազանների կերպարանքներ: Բայց որ ճիշտն ասեմ, մինչև այդտեղ հասնելը այնքան էինք սառել ու մրսել, որ ընկերս ասաց. «Էլ մենք այստեղից դուրս եկողը չենք»: Ասացի. «Արի» ու հանկարծ ըզգացի, որ վերևից տաք ջուր է կաթում: Կաթիլներից առաջացած փոսերի մեջ մտանք ու սկսեցինք պտտվել՝ մեկ մի ուսներս էինք տաքացնում, մեկ՝ մյուս:

Այնուհետև նորից շարունակեցինք ճանապարհը: Մեկ էլ քարափը լուսավորվեց, որ նըշանակում է մոտեցել ենք ելքին:

Քարանձավի ելքն ավելի փոքր էր մուտքից, և անկանոն դասավորված խոշոր քարերը դժվարացնում էին շարժումը: Այդ մասում քարերը լպրծուն են, և անհնարին էր բարձրանալ դրանց վրայով:

Բարեբախտաբար գտանք մի գերան՝ նույնպես մամռակալած ու լպրծուն: Դա մեզ փըրկեց՝ օգնեց բարձրանալ այդ դժվարին հատվածը ու դուրս գալ քարանձավից:

Հարկ է ավելացնել, որ Սատանի կամուրջը միակը չէ Հայկական բարձրավանդակում: Մեծ ճանաչում ունի հատկապես Եփրատի քարանձավը, որի վրայով անցնում էր Հայաստանն արտաքին աշխարհի հետ կապող ստրատեգիական ճանապարհը:

Այնպես ինչպես գետնի երեսից դուրս եկած տրավերտինները առաջացրել են Սատանի կամուրջը կամ Եփրատի քարանձավը, նույն ձևով Արարատ քաղաքի մոտ գետնի տակից տրավերտինների հսկայական քանակություն է դուրս եկել: Դրանց բազայի վրա Արարատի ցեմենտի գործարանն է աշխատում: Մենք դեռ հույս ունենք գտնել այդ տրավերտինների տեղում առաջացած ստորերկրյա վիթխարի դատարկությունները:

Ուրծի լեռներում մեր գտած առաջին կարստային վիհերը հաստատում են մեր ենթադրությունները:

ԳՐԻԳՈՐ ՀԱԿՈԲՅԱՆ

# Պատճառն ի՞նչ է...

— Մա՛յր հող, ասա՛,
Ինչի՞ց է սա.
Պտուղներ կան արևահամ
Ու ոսկեգույն, քաղցր այնքան,
Որոնց բույրն ու հրապույրը
Չունեն սահման:

Բայց պտուղ էլ կա այնպիսի,
Որի մասին
Ոչ մի լավ բան դու չես ասի.
Դառն է, թթու և... թունավոր,
Կյանքի համար վտանգավոր:
Ինչո՞ւ բոլոր թուփ-ծառերին,
Նաև նրանց պտուղներին,
Դու չես տալիս զուտ հաճելին:

Մայր հողն ասաց.— Ինձ լա՛վ լսիր
Եվ այս բանը դու լավ հիշի՛ր.
Ես բոլորի համար նույնն եմ,
Եվ ամեն ինչ իմ մեջ ունեմ,
Թե՛ քաղցրություն,
Թե՛ դառնություն.
Մի ծառ ինձնից քաղցրն առնում,
Մեկը՝ քաղցրին... դառն է խառնում:

Սովորել ես դու դպրոցում.
Ուսուցիչը, դա լավ գիտես,
Ամենքին էլ նույնն է ասում,
Բայց արի, տես,
Որ սաներից նրա բազում,
Ոմանք մարդ են դառնում բարի,
Արարում են լույս ու բարիք,
Իսկ ոմանք էլ՝ դառնում... չարիք...
Ինչպես ծառը, մարդը նույնպես,
Սիրած կողմն է հակվում, գիտես,
Եվ այդ կողմն էլ՝ առնում-տիրում,
Աշխարհ բերում...

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

# Տունը

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Մորեղբայրս ասում էր՝ տուն կառուցիր: Հորեղբորս տղաներն ասում էին՝ տուն կառուցիր: Երբ գնում էի գյուղ, հորեղբորըս, մորեղբորս կանայք ձեռքիցս բռնում, բերում կանգնեցնում էին մեր հին տան ավերակի մոտ ու ասում՝ տուն կառուցիր: Գյուղում հանդիպողը հարցնում էր, ե՞րբ ես հորդ տան տեղը տուն կառուցելու:

Կանգնեցնում էին ինձ բարձր ու կանաչ եղինջի թփուտներով ծածկված քարակույտերի առաջ ու համոզում տուն կառուցել:

— Էլ ի՞նչ տղամարդ, որ հոր ծուխը չծխացնի,— թախծոտ հայացքը եղինջով պատված քարակույտերին՝ ասում էր Աստղիկ հորաքույրս,— մեծանում-գնում եք, մեծանում, թևին տալիս թռչում եք...

Մորեղբայրս խոսում էր սրտալի, խելացի, մտերիմ: Հորեղբորս տղաները, հորաքույրերս գեղեցիկ էին խոսում, և ճըշմարիտ ու իմաստուն էին բոլորի խոսքերը: Եվ ես տխրում էի այդ խոսքերից, հոգիս խռովվում էր, սիրտս՝ կարոտում: Օրերով մտքիցս չէին գնում նրանց խոսքերը, և զարմանում էի. այս խառնաշփոթ ժամանակներում ինչպե՞ս է եղել, որ աշխարհի բոլոր անկյունների նման այստեղ էլ թեև իշխողը ժամանակակից ավտոմեքենաներն ու մոտոցիկլետներն են, ճապոնական մագնիտաֆոնները ու գունավոր հեռուստացույցները, բայց մարդկանց վրա բոլորովին չեն ազդում ո՛չ արագությունը, ո՛չ նյարդային երաժշտական ռիթմերը, ո՛չ ունենալու մոլուցքը...

— Դու միայն սկսիր,— ասում էր մորեղբայրս:

— Դու միայն սկսիր, մնացածը քո գործը չէ,— համոզում էին հորեղբորս տղաները:

— Դժվարն սկսելն է, դու մի՛ վախենա,— քաջալերում էին գյուղամիջյան ճանապարհներին հանդիպող գյուղացիները,— հենց սկսեցիր, ողջ գյուղը կհավաքվի, կօգնի քեզ:

Վերջապես համոզեցին, և ես որոշեցի իմ հոր գյուղում, իմ հոր ավերված տան տեղում մի տուն կառուցել: Մտածում էի՝ մի փոքրիկ տուն կլինի, փոքրիկ նկուղով, առջևում՝ այգի... Եվ երբ որոշումս հաստատելով գյուղ եկա, բոլորը հավաքվեցին. ինձնից շատ էին ոգևորված:

— Որ կառուցում ես, միանգամից մեծ տուն կառուցիր,— ասաց մորեղբայրս,— թե չէ տան փոքրը ո՞րն է: Տանը պիտի օդ լինի շնչելու, պիտի շարժվելու տեղ լինի, որ ներս մտնելիս մարդու հոգին բացվի:

— Գյուղի տունը պիտի մառան ունենա, որ այգու խնձորն ու տանձը լցնես, խաղողի կախանները լցնես, որ գինու գավը ձեռքիդ մտնես ու օրորվելով դուրս գաս,— ասացին հորեղբորս տղաները:

— Հայի տունը պիտի մեծ պատշգամբ ունենա,— ասացին հորաքույրերս,— հայի տունը պիտի բաց սիրտ ունենա ու բաց ճակատ և դեմքով պիտի արևելքին նայի: Էդքան աշխարհներ ես ման եկել, չե՞ս զգացել, որ հայի տունը բոլորից տարբեր է, կարծես հյուրի է սպասում, ճանապարհից հոգնած անցորդի, օտարությունից վերադարձող հարազատի:

— Տունն այնպիսին պիտի լինի, որ նայողն ասի՝ այ տուն եմ ասել հա՛...— աչքերն արևից կկոցելով եզրափակեց Նիկոլ պապը:

Մորեղբայրս մի ժամ հետո եկավ բուլդոզերով, մտավ հողամաս, փորեց հարթեցրեց տեղը: Լարեր բերեցին, չափեցինք, հիմքերը փորեցինք: Երեկոյան հիմքերը լցված-պատրաստ էին: Երեկոյան կանգնեցի լցված հիմքերի կողքին, նայեցի, զարմացա, թե էս ինչպե՞ս եղավ, էս ի՞նչ հրաշք էր:

Ամեն օր նոր մարդիկ էին գալիս օգնության, կատակելով, ուրախանալով, գործը միմյանց ձեռքից խլելով: Եվ բոլորը սըրտանց ուրախանում էին, որ գյուղում մի ավերված տուն է կենդանանում, մի մեռած հիշատակ հարություն առնում:

...Տունը շատ արագ կառուցվեց՝ բարձր, երկհարկանի, լայն, երկար պատշգամբով, մեծ, լայնարձակ մառանով, երկու մեծմեծ սենյակներով: Երբ տանիքը ծածկեցինք-վերջացրեցինք, տունը հայի տան



նմանվեց՝ կանչող ու սրտաբաց: Մայրս, հորաքույրերիս հետ մեծ սեղան բացեցին թթենու տակ, նստեցինք ճաշելու: Տաք ու հյուրասեր աշուն էր՝ մրգերով լեցուն այգիներով, հացով լիքը դաշտերով: Ծտերը կտցահարում էին թթենու վերջին պտուղները, և թութը կաթում էր սեղանի վրա: Մի պահ լուռ նայում էինք հպարտորեն կանգնած տանը: Բոլորս այնտեղ մեր աշխատանքն ու քրտինքի կաթիլներն էինք դրել քարի ու շաղախի հետ, և բոլորիս այն հարազատ էր ու սրտամոտ: Լռության մեջ հանկարծ հնչեց մորս թախծոտ, հուզված ձայնը.

— Հայրդ ճիշտ այսպիսի տուն էր երազում կառուցել, բայց պատերազմը խանգարեց: Եթե կենդանի լիներ, ինչքա՜ն կուրախանար...

Բաժակները լցրինք թթի օղիով: Նիկոլ պապը տնքալով վեր ելավ տեղից.

— Ապրե՜ս, որդի՛, որ չթողիր մարեր հորդ օջախի ծուխը, ապրես: Ամեն մարդ այս աշխարհում պիտի մի տուն կառուցի, որ տղամարդ կոչվի: Ամեն մարդ չէ, որ կառուցում է, կան, որ կառուցելու փոխարեն քանդում են: Դու սրանից հետո կարող ես գլուխդ բարձրման գալ, այսօրվանից տղամարդ ես։

Ահա այսպես, ես տուն կառուցեցի...: Իրենք հավաքվեցին, իրենք հետս կառուցեցին, իրենք ինձ տղամարդ դարձրին ու ճանապարհ դրին: Եվ այնքան բնական, այնքան հեշտ ու անկեղծ:

# ԳՐՔԵՐԸ ԴԱՌՆՈՒՄ ԵՆ ԵՐԿԱՐԱԿՅԱՑ

Սոնյա Առաքելյանը սովորում է 6-րդ ա դասարանում: Ուսման գերազանցիկ է: Անցյալ տարի նա դասագրքերի լավ պահպանման և օգտագործման համար պարգևատրվեց:

Սեպտեմբերին, երբ նոր գրքեր ստացան, Սոնյան դրանք անմիջապես կազմեց, էջանիշեր կարեց:



— Ես նույնիսկ տնային առաջադրանքները դասագրքում չեմ նշում,— ասում է նա,— դրա համար առանձին տետր եմ պահում:

Լենինականի № 21 դպրոցում մի քանի տարի է, ինչ այդպիսի մրցույթ է անցկացվում: 3-րդ ա դասարանցի Արմինե Ղազարյանն էլ է այդ մրցույթում հաղթող ճանաչվել: Նա գրքերը այնքան լավ է պահում, որ թվում է ձեռք չի կպել:

Մրցույթի հաղթողներից են դպրոցի գրադարանավարուհի Ժաննա Ալավերդյանի ղեկավարած կազմարարական խմբակի շատ անդամներ:

Գնալով պակասում է «հիվանդ» դասագրքերի թիվը:

Ամիսը մի երկու անգամ կազմարարական խմբակի անդամները ընկեր Ալավերդյանի հետ մտնում են դասարանները և ստուգումներ կատարում: Նայում են և նշումներ անում:

Անցյալ տարի դպրոցում եղել է 8221 դասագիրք, այս տարի՝ 9527: Ուրեմն լավ են պահպանել, և դուրսգրման ենթակա դասագիրք չի եղել: Նորն էլ ավելացել է եղածի վրա:

ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԱՐՏԱԴՐԱՆՔ՝ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՄԱԿՆԻՇՈՎ

Տարիներ առաջ ծնունդ առած «Հանվորական օրվան՝ պիոներական ժամեր» նախաձեռնությունը նոր արմատներ է տալիս: Լենինականի Միքայել Նալբանդյանի անվան դպրոցի՝ ականավոր հեղափոխական Պյոտր Արվելաձեի անունը կրող պիոներական դրուժինայի պիոներների 50 հոգիանոց արտադրական բրիգադն աշխատում է շեֆ ձեռնարկության՝ էլեկտրատեխնիկական գործարանի տեղամասերում, ուր նրանց ամրացված են փորձառու վարպետ-դաստիարակներ: Պիոներները օգնում են արտադրության մարդկանց և սովորում մասնագիտություն: Նրանք միաժամանակ խնամում են ձեռնարկության բակի և տարածքի կանաչ սաղարթն ու թփերը: Շեֆերը դպրոցին օգնում են ձևավորելու մարզահրապարակները, նորոգելու գույքը, ձեռք բերելու դասագրքեր և գրենական պիտույքներ, ամռանը նրանց համար կազմակերպում են պիոներական բակային ճամբար: Սովորողների աշխատանքային դաստիարակության և շեֆական կապերի համար պիոներական դրուժինան պարգևատրվեց ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրով:

Այժմ լենինականցի դպրոցականները հանդես են եկել նոր նախաձեռնությամբ, որ կոչվում է «Արտադրանք՝ դպրոցական մակնիշով»: Նոր նախաձեռնությունը ո-

րոնումների է մղել Դուրյանի, Կիրովի, Տերյանի, Ղուկասյանի, Մաշտոցի անվան դպրոցների, ժողկրթբաժնի արտադրական կոմբինատի սովորողներին և ուսուցիչներին:



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ուսումնական արհեստանոցներում փորձեր են արվում տալու աշակերտական արտադրանք: Իսկ շեֆ ձեռնարկությունների կոլեկտիվները էլ տրամադրում են նյութեր, հումք, գործիքներ, սարքավորումներ, ցույց տալիս մասնագիտական օգնություն:

● Լենինականի տեքստիլագործները անցած սեպտեմբերի 1-ին, գիտելիքների օրվա առթիվ, ահա թե ինչ նվեր մատուցեցին քաղաքի երեխաներին:

Տեքստիլագործների բանվորական ավանում, Իսահակյանի անունը կրող մեծ փողոցի կենտրոնում մի զովասուն պուրակ կա: Տեքստիլագործները բարեկարգեցին այդ փողոցը, բնակելի շենքերը, նաև պուրակում ստեղծեցին յուրատեսակ հանգրստի գոտի:

Ստեղծվեցին նոր ծաղկանոցներ ու կանաչ գոտիներ, ելքն ու մուտքը զարդարող հուշանմոթողներ, զարդաքանդակներ: Բազմաթիվ ցայտաղբյուրներ և ջրավազաններ են զարդարում պուրակը: Ամենուր դրված են նստարաններ, բացօթյա, պես-պես գույներով տաղավարներ: Ստեղծված են նաև խմբակային խաղերի հարմարավետ անկյուններ:

Երբ իջնում է երեկոն, վառվում են փողոցի և զբոսայգու լապտերները՝ մի առանձին հմայք հաղորդելով պուրակին:

Տեքստիլագործների մշակույթի պալատը, երաժշտական դպրոցը, նկարչական ստուդիան, ինքնագործունեության խմբերը բացօթյա միջոցառումներ կկազմակերպեն Իսահակյանի անվան պուրակում, «Արագած» մարզակումբն ու մանկապատանեկան մարզադպրոցը մարզական միջոցառումներ ու մրցումներ, ցուցադրական ելույթներ կունենան այնտեղ:



Եկող տարի լրանում է Ավետիք Իսահակյանի ծննդյան 110-ամյակը: Այդ առթիվ ծրագրված է Վարպետի անունը կրող պուրակում անցկացնել հոբելյանական հանդիսություններ:

Տեքստիլագործները հոգ են տարել, որպեսզի նոր տեսք ստանան ոչ միայն պուրակն ու փողոցը: Մերձակա «Ձնծաղիկ» մանկապարտեզի պարիսպը լիովին նորացվել է և ստացել ճարտարապետական հիանալի ձևավորում, փոխվել են շենքերի պատշգամբները, սալիկներով երեսպատվել:

Բազմապատկվել է խինդն ու բերկրանքը Իսահակյան փողոցում և պուրակում:

ՌՈԲԵՐՏ ՀԱԿՈԲՅԱՆ




ԱԶԱՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

# Ասք աստվածների և արքաների մասին

Եթե հեթանոսական ժամանակներից մեզ հասած լիներ միայն «Ո՞վ տայր ինձ զծուխ ծխանի»-ն, այդ արդեն բավական էր հասկանալու, որ այն հեռավոր դարերում արդեն մենք բարձր զարգացած բանաստեղծություն ենք ունեցել: Տակավին չունեինք սեփական գիր ու գրականություն, բայց ժողովուրդը բանավոր ստեղծում էր երգեր և փանդիռների նվագակցությամբ երգում:

Հայերը քրիստոնեություն ընդունեցին IV դարում (301 թ.): Այն պետական կրոն էր, հենվում էր պետության ուժի վրա, և նրա սպասավորները չարաչար հալածանք ծավալեցին հեթանոսական ամեն ինչի նկատմամբ: Քանդում էին հեթանոսական տաճարները՝ մեհյանները, ջարդում արձանները, այրում գրքերը, պատժում էին նրանց, ովքեր երգում էին հեթանոս երգեր: Եվ, բնականաբար, միայն փշրանքներ պահպանվեցին հին բանաստեղծությունից, այն էլ՝ շնորհիվ պատմահայր Մովսես Խորենացու, որը 5-րդ դարում իր լըսածից մի քանի հատվածներ գրի էր առել: Ժողովուրդը դեռ երկար, երևի քրիստոնեության ընդունումից դարեր հետո էլ երգում էր այդ երգերը, միայն թե գաղտնի, խուլ վայրերում, քահանաների աչքից ու ականջից հեռու:

Այդ փշրանքներն իսկ շատ գունեղ են, շատ տպավորիչ, բանաստեղծական նուրբ արվեստի արտահայտություններ են:

Հեթանոս ժամանակների մեր հեռավոր նախահայրերը երգում էին իրենց աստվածներին, որոնք, ի տարբերություն քրիստոնեական աստծու, ներկայացվում էին իբրև մարդակերպ, զորավոր էակներ, ինչպես հին հունական աստվածներն էին նկարագրվում հունական դիցաբանության մեջ ու ավանդություններում: Ահա թե ինչպես էին հին հայերը ներկայացնում իրենց ամենահզոր աստվածներից մեկի՝ Վահագնի ծնունդը:

Երկնէր երկին, երկնէր երկիր,
Երկնէր և ծովն ծիրանի.
Երկն ի ծովուն ունէր
Եւ զկարմրիկն եղեգնիկ:

Ընդ եղեգան փող ծուխ ելանէր,
Ընդ եղեգան փող բոց ելանէր.
Եւ ի բոցոյն վազէր
Խարտեաշ պատանեկիկ:

Նա հուր հեր ունէր,
Բոց ունէր մօրուս,
Եւ աչկունքն էին արեգակունք:

(Երկնում էր երկինքը, Երկնում էր երկիրը, Երկնում էր և ծիրանի ծովը, Ծովում երկունքով էր բռնված Եվ կարմրիկ եղեգնիկը։ Եղեգան փողից ծուխ էր ելնում, Եղեգան փողից բոց էր ելնում, Եվ բոցի միջից վազում էր մի խարտյաշ պատանյակ։ Նա հուր մազեր ուներ, Ուներ բոցե մորուս, Աչքերն էին արեգակներ)։

Հիմա մեզ համար դժվար է ասել, թե ինչ ծիսակատարությունների հետ է կապված եղել այս երգը, ինչ սկիզբ ու շարունակություն է ունեցել։ Բայց, անկախ այդ բոլորից, այն մեզ ներկայացնում է մի գունագեղ, վառվռուն աշխարհ, որտեղ հրի ու ջրի տարերքից ծնվում է պատանի աստվածը։ Գույների ի՜նչ զարմանալի կուտակում կա այս մի քանի տողում, ուր տիրապետողը կարմիրն է, հուրը։ Ծովը ծիրանի է, եղեգնիկը՝ կարմրիկ, Վահագնը խարտյաշ է, նրա մորուքը՝ բոց, մազերը՝ հուր, աչքերն էլ համեմատվում են արեգակի հետ։ Ահա այսպես մեր նախնիների համար աշխարհը հագեցած էր շռայլ, շքեղ գույներով ու լույսով։

Մեզ հասած հատվածներից են Արտաշես արքային նվիրված երգերը, որոնք երգվում էին «գինեվետ» (գինով հարուստ, ինչպես վկայում է Խորենացին) Գողթն գավառում։ Դրա համար էլ հին երգերը հաճախ անվանում են գողթան երգեր. սրանց մեջ արտացոլվել են պատմական անձանց և պատմական իրադարձությունների մասին հիշողությունները՝ էպիկական տեսք ստացած։

Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն
գեղեցիկ,
Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Եւ անցեալ որպէս զարծուի սրաթև ընդ
գետն,
Եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն՝
Ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց,
Եւ շատ ցաւեցոյց զմէջք փափուկ
օրիորդին,
Արագ հասուցանելով ի բանակն իւր։

(Հեծավ արի արքա Արտաշեսը գեղեցիկ սև ձին, Եվ հանելով ոսկեօղ շիկափոկ պարանը, Եվ անցնելով գետը, որպես արծիվ արագաթև, Եվ նետելով ոսկեօղ շիկափոկ պարանը, Գցեց Ալանաց օրիորդի մեջքը, Եվ շատ ցավեցրեց օրիորդի փափուկ մեջքը՝ Արագ հասցնելով իր բանակը)։

Մյուս հատվածներից և Խորենացու պատմածից մենք գիտենք, որ հայոց Արտաշես արքան կռվում գերել էր ալանաց (ալանները բնակվում էին Հյուսիսային Կովկասում և այժմյան օսերի նախահայրերն էին) արքայորդուն։ Նրա քույր Սաթենիկը ուզում էր համոզել Արտաշեսին ազատ արձակել իր եղբորը՝ արքայորդուն։ Արտաշեսը սիրահարվում է Սաթենիկին և նրան իրեն կնության ուզում։ Ալանները չեն համաձայնում։ Այն ժամանակ Արտաշեսն առևանգում է Սաթենիկին, ինչպես գտնում էին, վայել է խիզախ երիտասարդին։ Եվ հին օրերի գուսանը ի՜նչ գեղեցիկ համեմատությամբ է բնութագրում Արտաշես արքային՝ «որպես զարծուի սրաթև»։ Եվ ի՜նչ տեղին է հիշում օրիորդի «փափուկ», այսինքն՝ նուրբ մեջքը, որն իսկապես շատ պիտի ցավեր արքայի պարանի սեղմումից։ Գուսանը չի մոռանում արքայի ձին՝ «գեղեցիկ սևին», չի մոռանում պարանի փոկի գույնը՝ շիկափոկ, չի մոռանում, որ օղը ոսկի էր՝ ոսկեօղ։ Արտաքին աշխարհի այս մանրամասները շատ կարևոր են։ Արքան կենսասեր է, վայելչասեր։ Պատահական չէ, որ Արտաշես արքան մեռնելուց առաջ հիշում է հայրենի ծխանի ծուխը, թմբուկներ հարելը, արքայական որսը։

Խոսքը այս հատվածներում հանդիսավոր է, կրկնությունները տողերին հաղորդում են էպիկական հանդարտություն և վեհություն՝ երկնէր երկին, երկնէր երկիր, երկնէր և ծովն ծիրանի, ընդ եղեգան փող ծուխ ելանէր, ընդ եղեգան փող բոց ելանէր (Վահագնի ծնունդը նկարագրող հատվածում), և կամ՝ Եվ հանեալ զոսկեօղ շիկափոկ պարանն... և ձգեալ զոսկեօղ շիկափոկ պարանն (Սաթենիկի առևանգումը պատկերող հատվածում)։

Այս և մի քանի ուրիշ հատվածներ են միայն հասել մեզ, Խորենացու վկայության հետ միասին։ Եվ մեզ մնում է երևակայության ուժով պատկերացնել, թե ինչպես էին հաղթահասակ երգիչները փանդիռների նվագակցությամբ երգում այս խրոխտ երգերը, և ինչպես էին ոգևորվում նրանց ունկնդիրները Վահագն աստծո տեսքով ու Արտաշես արքայի քաջագործություններով։

Ինչքան էլ ժամանակի հետ մոռացվեցին այդ երգերը, նրանց ոգին ապրեց ժողովրդի մեջ, որպեսզի մի նոր ձևով դրսևորվի միջնադարյան ու նոր ժամանակների հայոց քնարերգության մեջ։





















ՕՍԻԿ (ՀՈՎՀԱՆՆԵՍ) ՓԱՓՈՒՋՅԱՆ
ՄՈՒԿՈՒՉ ԲԱՂՐԱՄՅԱՆ
ԼԵՎՈՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ
ԿԻՄ ՊԵՏՐՈՍՅԱՆ
ՂԱՐԻԲ ՂԱՐԻԲՅԱՆ
ԱՐԱՄ ԲՈՒՆԻԱԹՅԱՆ
ԿԱՌԼԵՆ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ
ՄՈՒԿՈՒՉ ՊԱՊԱՆՅԱՆ
ԷՍՊԵՐԱՆՍ ԲԱՅԱՋՅԱՆ

ԼԵՎՈՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
ՎԻԳԵՆ ԵՐԻՑՅԱՆ
ՍՈՒՐԻԿ ՄՈՒՍԱԽԱՆՅԱՆ
ՍԱՇԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ
ՌԱՖԻԿ ՍՏԵՓԱՆՅԱՆ
ՎԱՀԱԳՆ ՂԱՐԱԳՅՈԶՅԱՆ
ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՄԻՇԻԿ ԽԱՆԼԱՐՅԱՆ

# ԵՐԴՎՈՒՄ

«Մեր ստորաբաժանումները ոչ միայն կասեցրին թշնամու կատաղի գրոհը, այլև անցան հակագրոհի: Լեյտենանտ Ղարիբ Մարգարի Ղարիբյանը իր մարտիկներին գրոհի տանելու պահին վիրավորվեց ոտքից և վերքը կապելուց հետո շարունակեց հակագրոհը մինչև թշնամու խրամատների մոտ և զոհվեց հերոսի մահով»:

Այս տողերը Թամանյան դիվիզիայի տարեգրությունում են գրված: Մենք շատ ենք կարդացել նմանօրինակ նկարագրություններ և, ցավոք, կամա թե ակամա ընտելացել ենք դրանց: Գիտենք, որ հերոսությունը այն օրերի համար ամենօրյա, ամենժամյա երևույթ էր: Մոռանում ենք երբեմն, թե ինչեկան որպիսի ուժ էր պահանջվում դրա համար: Նման հանգիստ շարադրանքների ետևում մարդիկ էին կանգնած՝ իրենց բարդ ճակատագրերով, սերերով, կարոտներով:

Ղարիբ Ղարիբյանը մեկն էր Երևանի Մաքսիմ Գորկու անվան դպրոցի այն աշակերտներից, որոնք մեկնեցին ռազմաճակատ հայրենի հողը պաշտպանելու:

Իր բանաստեղծության մեջ ահա թե ինչ է գրում նույն դպրոցի մի ուրիշ սան՝ Կարլեն Մելիքսեթյանը.

... Հասել է ժամը՝ վրեժի,
ցասման,
Պետք է ջախջախվի ֆաշիստը
գազան:

Թուղթը խունացել է: Բանաստեղծությունը թվագրված է՝ 41 թիվ, 27-ը VI ամիս: Պատերազմի առաջին օրերն էին, մերոնք նահանջում էին, բայց միևնույնն է, հաղթանակի նկատմամբ հավատը ուժգին էր: Այդ զգում ես նաև լուսանկարից նայող բացճակատ տղայի աչքերից:

Վիգեն Երիցյանը երաժշտի և նկարչի անժխտելի շնորհք ուներ: Եվ արվեստի ի՜նչ բարձունքներ էր նվաճելու: Վիգենին տանջամահ արեցին հակահետախուզման ճամբարում: Սակայն ոչ մի տեղեկություն նրանից չկարողացան կորզել գերմանացիները:

Ալիդա Միլիտոնյանը ռուսաց լեզվի ուսուցչուհի է Մ. Գորկու անվան դպրոցում: Տարիներ առաջ նրա ղեկավարությամբ Էսպերանս Բայազցյանի անունը կրող ջոկատը բարեկամություն էր հաստատել հերոսի հարազատների հետ: Այցելում էին նրանց, գրի առնում հուշերը: Նույնիսկ Էսպերանսի ձեռակերտ աշխատանքները գտան ու բերեցին դպրոց: Պահպանվել է Էսպերանսի «Երիտասարդ Դավիթը» քանդակը:

Նա երազում էր քանդակագործ դառնալ... Զոհվեց անհավասար մարտում:

Օնիկ Փափուչյանը դպրոցի կոմերիտական կազմակերպության քարտուղարն էր: Եվ, ինչպես վայել է քարտուղարին՝ կարգապահ էր, լավ էր սովորում: 1937 թվականին «Ավանգարդ» թերթում տպագրված իր հոդվածում ահա թե ինչ էր նա գրում. «Այս ուսումնական տարվա առաջին քառորդում ես ունեի մեկ առարկայից «վատ» գնահատական, իսկ մյուսներից՝ «գերազանց»: Որոշեցի այդ առարկան ևս սովորել գերազանց և որոշումս իրականացրի երկրորդ քառորդում: Գերազանցիկ լինելու համար պետք է լինել աշխատասեր, կարգապահ, ճշտապահ, ժամանակին կատարել ուսուցչի տված հանձնարարությունները, այսօրվա գործը չթողնել վաղվան»:

Օնիկը մտադիր էր ուսումը շարունակել Մոսկվայի համալսարանում: Զոհվեց Ստրից քաղաքը պաշտպանելիս:

Եվս մեկ հուզիչ պատմություն. ծանր մարտ էր: Դրությունը առավել ևս բարդացավ, երբ թշնամու տանկերը ճեղքեցին պաշտպանական գիծը: Ծխի, փոշու միջից սպաները նկատեցին մի խիզախ ռազմիկի, որ սողալով ընդառաջ էր գնում տանկերին: Նրա նետած նռնակներով բոցավառվեց երկու տանկ: Իսկ վերջին նռնակի հետ էլ իրեն նետեց երրորդ տանկի թրթուրների տակ: Դա գեներալ Սարգիս Մարտիրոսյանի որդին էր՝ Մարսել Մարտիրոսյանը:

Հիշատակված օրինակները եզակի չեն: Խոնարհվենք նրանց պայծառ հիշատակի առաջ: Հիշենք նրանց անուն առ անուն և կրկնենք ինչպես երդում՝ խոստանում ենք նմանվել ձեզ՝ Լևոն Աբրահամյան, Զավեն Ավագյան, Հենրիկ Աղաբաբյան, Մուկուչ Բաղրամյան, Արամ Բունիաթյան, Էսպերանս Բայազցյան, Վիգեն Երիցյան, Միքայել Խանլարյան, Վահագն Ղարագյոզյան, Ղարիբ Ղարիբյան, Վարդգես Մարտիրոսյան, Մարսել Մարտիրոսյան, Գևորգ Մանդակունի, Միհրան Միրիջանյան, Սուրիկ Մուսախանյան, Լևոն Մուրադյան, Սաշիկ Մկրտչյան, Կարլեն Մելիքսեթյան, Հարություն Հարությունյան, Մուկուչ Պապանյան, Կիմ Պետրոսյան, Ռաֆիկ Ստեփանյան, Անդրանիկ Մոնոյան, Օնիկ Փափուչյան, Գևորգ Օհանջանյան: Հավերժ փա՜ռք ձեզ:

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

# ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ

## ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

Մի օր, 1950 թվականին էր այդ, Պետհրատի մանկապատանեկան գրականության խմբագրություն մտավ միջահասակ, թիկնեղ մի մարդ, հնամաշ պորտֆելը ձեռքին: Դիմագծերը խոշոր էին, կոպիտ-գեղջկական, շարժումները՝ փոքր-ինչ վեհերոտ, անհամարձակ: «Ես ձեզ համար գիրք եմ գրել, տեսեք, թե որ բանի նման է...» Եվ, պորտֆելից հանելով թերթի մեջ ծրարած ձեռագիրը, դրեց սեղանին ու գնաց: Մանկավարժական ինստիտուտի դասախոս, աշխարհագրագետ Կամսար Ավետիսյանն էր: Ծանոթացանք ձեռագրին՝ «բանի նման էր»: Գիրքը, որ կոչվում էր «Անվանի աշխարհագրագետ ճանապարհորդներ», տպվեց և արժանացավ պատանի ընթերցողների ջերմ ընդունելությանը: Ավետիսյանը այնուհետև գլխովին նվիրվեց իր սիրած գործին, տարեցտարի պատանի ընթերցողի գրադարանը հարստացնելով նորանոր գրքերով: «Ի՞նչ է պատմում քարտեզը», «Ասիայի երկրներով», «Արևելքի մարգարիտը», «Իմաստուն խոսքերի աշխարհում», «Հրաշքների աշխարհում», «Երևանի պատմությունը անունների մեջ»— ահա մի քանիսը այն գրքերից, որ նա դրեց ընթերցողի սեղանին: Ընդգրկումը մեծ է, թեմաները՝ բազմազան: Այդպիսի գրքեր գրելու համար, շնորհքից բացի, անհրաժեշտ է փաստերի վիթխարի կուտակում, որ Ավետիսյանն սկսել էր դեռևս դպրոցական նստարանից:

Ո՞րն է այդ գրքերի հիմնական արժանիքը, ինչի՞ շնորհիվ են դրանք դարձել պատանի ընթերցողի անբաժան ուղեկիցները: Շնորհիվ գիտելիքների այն անըսպառ պաշարի, որ հեղինակը շռայլորեն փռում է նրա առաջ: Մենք նրա հետ անցնում ենք երկրեերկիր, լողում ծովերով, օվկիանոսներով, գետերով ու լճերով, տեսնում երկրագնդի բուսական ու կենդանական աշխարհը, ծանոթանում ազգերին, ցեղերին ու ցեղախմբերին, նրանց ստեղծած նյութական արժեքներին, հիանում մարդկային ստեղծագործ հանճարի անմեռ կոթողներով, նկարչության, քանդակագործության, ճարտարապետության մնայուն արժեքներով:

Կամսար Ավետիսյանը պատմում է հասարակ, անպաճույճ լեզվով, ասես մտերմիկ զրույց է վարում ընթերցողի հետ: Առհասարակ Ավետիսյանը ցանկալի զրուցակից էր, կարողանում էր ուշադիր լսել զրուցակցին, իսկ դա բարձր գնահատելի հատկություն է: Տհաճ են այն մարդիկ, որոնք խոսքը խլում են ուրիշի բերանից: Իսկ երբ Ավետիսյանն ինքն էր խոսում, պատմում էր համով-հոտով, ասելիքը համեմելով ժողովրդական բառ ու բանի կենդանի դարձվածքներով: Հարմար պարագային դիմում էր թևավոր խոսքերի, առածների, երբեմն էլ նովելատիպ պատմությունների օգնության: Տարիների ընթացքում նա իր մեջ ամբարել էր ժողովրդական զրույցների, անեկդոտների, աֆորիզմների մի ամբողջ շտեմարան և գիտեր դրանք տեղին ու ժամանակին օգտագործել: Նրա գրավոր խոսքը բանավորի բնական շարունակությունն էր՝ նույնքան պարզ ու կենդանի, նույնքան սերտորեն կապված ժողովրդական խոսքի զուլալ ակունքներին:

Գիտնականը առանձին «թուլություն» ուներ արվեստի գործերի նկատմամբ: Նրա բնակարանի պատերը ծածկված են նշանավոր վարպետների կտավների ընտիր վերատպություններով: Նրա գրադարանը հարուստ է մեծ արվեստագետներին նվիրված մենագրություններով: «Հրաշալիքների աշխարհում» գիրքը նվիրված է արվեստի ստեղծագործություններին՝ աշխարհի «յոթ հրաշալիքներին»: Այսպիսով Ավետիսյանի գրքերը, բացի գիտելիքներից, գեղեցիկի ճաշակ են սերմանում ընթերցողների մեջ, օգնում ավելի խորն ըմբռնելու արվեստի նշանավոր ստեղծագործությունները: Ահա, օրինակ, նա պատմում է այն կուլտուրաների մասին, որ Կոլումբոսը Արևելյան կիսագունդ բերեց Ամերիկայից: Այդ կուլտուրաների թվում էր նաև կաուչուկը: «Հասարակածային Աֆրիկայի (հատկապես Կոնգոյի) բնիկների համար



*Կամսար Ավետիսյանն իր գործընկերների հետ*

անասելի ծանր է կաուչուկի պլանտացիաներում աշխատելը: Կաուչուկի մշակման ամբողջ սարսափն իր արտացոլումն է գտել Կոնգոյի նեգրերի մի երգում, որը կոչվում է «Մատուֆի պիլամոկո ակուֆի»— «Կաուչուկը մահ է».

«Անտառը հրաշալի է ազատ մարդու համար:

Մեզ համար անտառը տխուր է, մռայլ ու թշնամական: Մենք ազատ մարդիկ չենք, ոչ էլ որսորդներ կամ ճանապարհորդներ: Մենք սպիտակների ստրուկներն ենք:

Կաուչուկը մահ է:

Սպիտակը պահանջում է մեզանից՝ կաուչուկ, կաուչուկ, կաուչուկ: Իսկ մենք ասում ենք, ասում ենք նրան.

Կաուչուկը մահ է:

Մեր սուր դանակները կտրում են լիանաները, և նրանցից սպիտակ կաթ է ծորում: Այդ կաթը մեր երակների արյունն է, մեր կյանքն է ծորում այդպես ու անհետ կորչում:

Կաուչուկը մահ է:

Անիծյալ իժերը ավելի քիչ են վնասակար, քան լիանաները: Իժերն սպանում են միանգամից: Լիանաները մեր կյանքը ծծում են կաթիլ առ կաթիլ:

Կաուչուկը մահ է:

Անտառը մեր գերեզմանն է: Այդ գերեզմանը միշտ բաց է և անվերջ նորանոր զոհեր է պահանջում:

Կաուչուկը մահ է»:

Դժվար է կապիտալիզմի հակամարդկային, գիշատիչ էությունը բացահայտող ավելի ցայտուն օրինակ գտնել, քան նեգրական այս պարզ երգը, ժողովրդական բանահյուսության այս ցնցող ստեղծագործությունը:

Աշխարհագրագետ հասկացողությունը անխզելիորեն կապված է շրջելու, ճանապարհորդելու հետ: Կամսար Ավետիսյանը եղել էր Իտալիայում, Հնդկաստանում, Սիրիայում, Լիբանանում, Եգիպտոսում: Բոլոր այդ երկրներում նա գիտնական-աշխարհագրագետի քննախույզ աչքերով դիտում ու զննում էր մարդկանց ու նրանց ապրելակերպը, աշխատում կենդանի իրականությամբ ստուգել ու ճշգրտել այդ երկրների մասին իր իմացածն ու կարդացածը: Հայրենիք վերադառնալով, նա իր տպավորությունները հաղորդում էր դպրոցականներին, ելույթներ ունենում ռադիոյով:

Կամսար Ավետիսյանը աշխարհագրական գիտության անխոնջ պրոպագանդիստ էր, մեր պատանեկության իսկական բարեկամը: Անչափ ուսանելի է այն անմնացորդ նվիրումը, որով նա, սկսած աշակերտական նստարանից, ծառայեց իր նախասիրած գիտությանը: «Զարմանալիորեն շատ եմ սիրել ու սիրում եմ այդ հրաշք-գիտությունը,— գրում է Ավետիսյանը:— Եվ եթե ինձ բախտ վիճակվեր նորից սկսել ուսումս, ապա կսկսեի աշխարհագրությունից»:

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

# Գլորնակը

Նրանք սարեցի չէին, թեև ապրում էին Սարիթաղում: Քաղաքի այդ թաղամասի տները միհարկանի էին և դեռևս ենթակա չէին վերացման, տեղը բազմահարկ շինություններ կանգնեցնելու համար: Հայրը քանդել էր հին պատը, և տան քարերը իրենց պետք չէին ո՛չ ցանկապատի, ո՛չ էլ այլ նպատակի համար: Եվ այդ քարերը նա տանում լցնում էր ասֆալտապատ ճամփի եզրի մեծ փոսի մեջ:

Օհանը գլորնակը վերցրեց և բակից պիտի դուրս գար խաղալու, երբ մայրը ձայնեց.

— Ա՜յ տղա, սամակատը հանգի՛ստ թող և գնա հո՛րդ օգնիր:

Հայրը խնայում էր Օհանին՝ երեխա է, թող մի քիչ էլ անհոգ մեծանա: Օհանն ինքը պիտի հասկանար ու օգներ հորը: Հայրը խնայում էր նրան, որովհետև քարերը ծանր էին: Ինքը պիտի հասկանար ու օգներ հորը, ոչ թե այդ աներ մոր ասելուց հետո՝ բաց թողներ գովասանքի արժանի մի նախաձեռնություն: Նա գլորնակը հենեց ցանկապատին, հայացքով որոնեց գտավ մի թեթև քար և տարավ դեպի փոսը: Նա պահել էր շունչը և արագ-արագ էր փոխում իր բարակ ոտքերը, իր տարիքի համար չափազանց համարելով այդ աշխատանքը: Քարը գցեց փոսի մեջ դրանից ազատվելու թեթևացած հոգոցով:

Տեղափոխելու երթուղարձի ընթացքում, երբ դեմ-դիմաց դուրս եկան, հայրը ժպտաց նրան:

Օհանը տեղափոխեց երկրորդ քարը: Նա մտքում պահեց «երկու քար», մինչև որ երրորդն էլ փոսը գլորեց: Օհանը հաճույքով դիտեց քարի գլորվելու ընթացքը և «գլորել-գլորնակ» կրկնելով, վերադառնում էր դեպի քարակույտը, երբ մտքում կայծակեց մի փայլուն գաղափար: Օհանը գլորնակը մոտ բերեց քարակույտին, վրան դրեց մի մեծ քար և մի ձեռքը ղեկին, մյուսով քարը պահած՝ նա գլորնակը քշեց դեպի ճամփեզրի փոսը, առանց հևալու, առանց ինքն իրեն խղճալու: Եվ երբ իրար դիմաց դուրս եկան հոր հետ, ինքն արդեն ծիծաղում էր ուրախությունից, մանավանդ որ հայրն ասաց՝ ապրես: Օհանն ուրախացել էր, որովհետև իր համար աշխատանքը դարձել էր խաղ կամ խաղը՝ աշխատանք: Նա արդեն հաշվում էր՝ յոթ-ութ, և համարում էր, թե հորից ավելի արագ է տեղափոխում քարերը: Ինքը կուզենար, որ իր փոխադրածներն առանձին կույտ կազմեին, որ դրանցով հրճվեր փաստացիորեն և տեսանելիորեն: Բայց դա հնարավոր չէր: Իրեն մնում էր միայն թվաբանությամբ բավարարվել՝ տասնմեկ-տասներկու: Ա՛յ թե որտեղ են պետք գալիս դպրոցում և գրքերի վրա կորցրած ժամանակը: Նա «կորցրածը» երկու կողմից առավ չակերտների մեջ և ժպտաց սեփական սրամտության վրա:

Գլորնակի մտքով կարո՞ղ էր անցնել, որ պետք կգա այսպիսի մի օգտակար գործի համար ևս: Եթե նա լեզու ունենար, Օհանին կասեր.

— Ա՜յ Օհան, համա՜ թե խելոք ես...

Քարը փոսը գլորելուց հետո, Օհանը վերադառնում էր դեպի փոխադրելիքը՝ գլորնակին հեծած, խաղալով, որպեսզի գլորնակը չմտածի, թե ինքը դադարել է խաղալիք և ուրախություն լինելուց: Շատ էլ գլորնակը երկնտանի չէ, բայց հո երկանիվ է: Շատ էլ շնչավոր չէ, Օհանն ինքը արագ-արագ շնչում է նրա փոխարեն նույնպես:

Տասնութ... տասնինը: Հայրը տարավ վերջին քարը և զրկեց նրան քսանին հասնելու հնարավորությունից, եթե իմանար, որ նա հաշվում է, վերջին քարը կզիջեր նրան:

Աշխատանքն ավարտած, աղբյուրի մոտ, հայր ու որդի, լվացվում էին, թափ տալիս իրենց վրայի փոշին:

— Ես քեզ համար դպրոցականի մեծ հեծանիվ եմ առնելու,— ասաց հայրը:

Օհանն այդպիսի պարգևատրում չէր սպասում:

— Շնորհակալությու՛ն, հայրի՛կ,— ասաց նա, հետո գլորնակը բերեց աղբյուրին մոտիկ, ողողեց տառը ջրով ու նրա վրայից նույնպես սրբեց քարերի թողած փոշին:

**Ռ. ԳՈՍԻՆՆԻ**

(ֆրանսիացի գրող)



Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ

Ուսուցչուհին ասաց, որ դիրեկտորը թոշակի է անցնում: Այդ պատճառով դպրոցում մեծ իրարանցում է: Համերգ է լինելու, ինչպես ուսումնական տարեվերջին, գալու են ծնողները, հանդիսությունների դահլիճում նրանց համար աթոռներ են դրվելու, իսկ դիրեկտորի և ուսուցիչների համար՝ բազկաթոռներ, և ամեն տեղ ծաղկաշղթաներ են կախվելու: Ելույթ, իհարկե, ունենալու ենք մենք:

Յուրաքանչյուր դասարան որևէ անսպասելի բան է պատրաստելու: Ավագ դասարանցիները բուրգ են ներկայացնելու. նրանք իրար ուսերի են կանգնելու, ամենավերևինը փոքրիկ դրոշակ է ծածանելու, և բոլորը ծափահարելու են: Այդ համարը նրանք արդեն ցույց են տվել անցյալ տարվա վերջում, և հրաշալի էր, թեև նրանց բախտը չբերեց. ամենավերևինը դեռ չէր հասցրել դրոշակը ծածանել, իսկ բուրգն արդեն քանդվել էր: Մեզանից մի դասարան բարձրերը պարելու են: Նրանք գյուղացու շորեր են հագնելու, ոտքերին՝ սաբո, շրջան կազմած դոփելու են գետինը, դրոշակի փոխարեն թաշկինակներ են ծածանելու և բղավելու են «հո՜պ-լա՜»: Այս համարն էլ ենք արդեն տեսել անցյալ տարվա վերջում, այնքան էլ հետաքրքիր չէր, բայց գոնե սրանք չգլորվեցին գետին, ինչպես բուրգ կազմողները:

Մի դասարան էլ ծիծաղաշարժ երգ է երգելու, իսկ մի քեռի, որը շատ վաղուց մեր դպրոցն է ավարտել, ճառ է արտասանելու և ասելու է մեզ, որ ինքն իսկական մարդ՝ քաղաքապետարանում գրագիր է դարձել, որովհետև միշտ հետևել է պարոն դիրեկտորի իմաստուն խորհուրդներին:

Այս բոլորի մեջ մենք ամենալավն ենք լինելու: Ուսուցչուհին ասաց, որ մենք ներկայացում ենք տալու, իսկական ներկայացում, ինչպես թատրոնում կամ հեռուստացույցում:

Պիեսը կոչվում է «Մատնաչափիկն ու կոշկավոր կատուն»: Այսօր դասի փոխարեն մենք առաջին փորձն ենք անելու, որի ժամանակ ուսուցչուհին ասելու է, թե մեզանից ով ում դերն է խաղալու: Ժոֆրուան համենայն դեպս կովբոյի հագուստ է հագել, նրա հայրը շատ հարուստ է և ամեն ինչ գնում է նրա համար, բայց այդ զգեստը ուսուցչուհուն այնքան էլ դուր չեկավ:

— Ես քեզ արդեն զգուշացրել եմ, Ժոֆրու՛ա,— ասաց նա,— ինձ դուր չի գալիս, երբ դու այդպիսի հագուստներով դպրոց ես գալիս, մանավանդ որ այս պիեսում կովբոյներ չկան:

— Կովբոյներ չկա՞ն,— հարցրեց Ժոֆրուան:— Էլ ի՞նչ պիես է դա: Ո՞ւմ է պետք այդպիսի պիեսը:

Եվ ուսուցչուհին նրան անկյուն կանգնեցրեց:

Պիեսը մի տեսակ խառնաշփոթ էր, և ես այնքան էլ չհասկացա, թե ինչն ինչոց է: Ուսուցչուհին ասաց, որ Մատնաչափիկը փնտրում է իր եղբայրներին և հանդիպում է Կոշկավոր կատվին: Այնտեղ կան նաև մարկիզ դե Կարաբասն ու Մարդակերը, որն ուզում է ուտել Մատնաչափիկի եղբայրներին, Կոշկավոր կատուն օգնում է Մատնաչափիկին հաղթել Մարդակերին, և սա չափազանց բարի է դառնում, չի ուտում Մատնաչափիկի եղբայրներին, բոլորը շատ գոհ են մնում և միասին ինչոր ուրիշ բան են ուտում:

— Դե՛հ,— ասաց ուսուցչուհին,— Մատնաչափիկի դերն ո՞վ է խաղալու:

— Ես, օրիորդ,— ասաց Անյանը:— Դա գլխավոր դերն է, իսկ ես դասարանի առաջին աշակերտն եմ:

Իսկապես էլ Անյան առաջին աշակերտն է, ուսուցչուհու սիրելին և... շատ վատ ընկեր, նա շարունակ տզտզում է, ականջ է կրում, և այդ պատճառով նրա հետ քաշքշվել չի կարելի:

— Ինձնից թե պարուհի դուրս գա, քեզնից էլ Մատնաչափիկ դուրս կգա,— ասաց Էդը:

Անյան իսկույն զռոցը դրեց և ուսուցչուհին Էդին կանգնեցրեց անկյուն:

— Հիմա մեզ Մարդակեր է պետք,— ասաց ուսուցչուհին,— Մարդակեր, որն ուզենա ուտել Մատնաչափիկին:

Ես Ալցեստին առաջարկեցի, որովհետև նա շատ հաստ է և շարունակ ծամում է: Բայց Ալցեստը չհամաձայնեց, նայեց Անյային ու ասաց.

— Չեմ ուզում, նա համով չէ:

Կյանքումս առաջին անգամ էի տեսնում, որ Ալցեստն ուտելիքից հրաժարվի, թեև Անյան իսկապես էլ այնքան ախորժելի տեսք չուներ: Անյան վիրավորվեց, որ իրեն ոչ ոք չի ուզում ուտել:

— Ե՛տ վերցրու խոսքերդ,— բղավեց Անյան,— թե չէ կասեմ ծնողներիս և քեզ կվռնդեն դպրոցից:

— Հանգիստ,— ձայնեց ուսուցչուհին:— Ալցեստ, դու գյուղացիների ամբոխը կներկայացնես, բացի այդ, ես քեզ հուշարար եմ նշանակում, ներկայացման ժամանակ դու կհուշես ընկերներիդ:

Ալցեստին այնքան դուր եկավ, որ պետք է հուշի, ինչպես հուշում եք դասի ժամանակ, որ գրպանից մի պաքսիմատ հանեց, բերանը դրեց ու ասաց.

— Ըհը՛:

— Այդ ինչպե՛ս ես խոսում,— բարկացավ ուսուցչուհին:— պատասխանիր մարդավարի՛:

— Ըհը՛, օրիո՛րդ,— սխալն ուղղեց Ալցեստը, և ուսուցչուհին ծանր հառաչեց: Ընդհանրապես վերջերս նա մի տեսակ հոգնած տեսք ունի:

Կոշկավոր կատվի դերն ուսուցչուհին սկզբում տվեց Մեքսանին: Նա ասաց, որ Մեքսանը կունենա գեղեցիկ կոստյում, սուսեր, բեղեր և պոչ: Մեքսանը շատ ուրախացավ, որ գեղեցիկ կոստյում, բեղեր և հատկապես սուսեր է ունենալու, բայց պոչ կպցնելուն ոչ մի կերպ չէր համաձայնում:

— Պոչով ես կապկի կնմանվեմ,— ասաց նա:

— Դու առանց դրան էլ կապկի ես նըման,— ասաց Ժուաշենը:

Դրա համար Մեքսանը նրան մի աքացի տվեց, իսկ Ժոաշենը դրան ի պատասխան սրա վզակոթին հասցրեց, և ուսուցչուհին երկուսին էլ անկյուն կանգնեցրեց ու ասաց, որ Կոշկավոր կատուն ես կլինեմ, իսկ եթե չհամաձայնեմ, ինձ էլ անկյուն կկանգնեցնի: Ասաց նաև, որ մենք բոլորս անպիտան տղաներ ենք, իրեն արդեն ձանձրացրել ենք և որ ինքը խղճում է մեր ծնողներին, իսկ եթե նույն ոգով շարունակենք՝ մեր վերջը վատ կլինի, մեզ բանտ կնստեցնեն, և որ ինքը խղճում է նաև մեր ապագա բանտապահներին:

Հետո նա Ռյուֆուսին Մարդակեր կարգեց, իսկ Կլոտերին՝ մարկիզ դե Կարաբաս, և բոլորիս մեքենագիր թերթիկներ բաժանեց, որոնց վրա գրված էր, թե ինչ պետք է ասենք: Այստեղ ուսուցչուհին նկատեց, որ չափազանց շատ դերասաններ են անկյուն կանգնած, կարգադրեց նրանց դուրս գալ այնտեղից և օգնել Ալցեստին՝ գյուղացիների ամբոխ ներկայացնելու: Ալցեստը դժգոհ էր, նա գտնում էր, որ մենակ էլ հրաշալի կկատարի այդ գործը, բայց ուսուցչուհին նրան հրամայեց լռել:

— Այսպես,— ասաց նա,— սկսում ենք: Կարդացե՛ք ձեր դերերը: Անյա՛ն, ուշադի՛ր լսիր, սա անտառ է, դու եկել ես այստեղ, հուսահատ փնտրում ես եղբայրներիդ և հանդիպում ես Նիկոլային՝ Կոշկավոր կատվին: Իսկ դուք, ամբո՛խ, բոլորդ միասին ասում եք. «Նայեցեք, սա Մատնաչափիկն է ու Կոշկավոր կատուն»: Սկսեցինք:

Մենք կանգնեցինք գրատախտակի առաջ: Գոտկիս տակ ես քանոն էի խրել, իբր թե սուսեր է: Անյան սկսեց կարդալ իր դերը:

— Եղբայրնե՛րս,— ասաց նա,— որտե՞ղ են խեղճ եղբայրներս:

— Եղբայրնե՛րս,— գոռաց Ալցեստը,— որտե՞ղ են խեղճ եղբայրներս:

— Ի՞նչ ես անում, Ալցեստ,— հարցրեց ուսուցչուհին:

— Ինչպե՞ս թե ինչ,— պատասխանեց Ալցեստը,— դուք ինձ կարգադրել եք հուշել, ես էլ հուշում եմ:

— Օրիորդ,— ասաց Անյան,— հուշելիս Ալցեստի բերանից ուտելիքի կտորտանքն ուղիղ ականջիս վրա է թռչում, ու ես ոչինչ չեմ տեսնում: Ես կբողոքեմ ծնողներիս:

Եվ Անյան հանեց ականջը, որ մաքրի, ուրախացած Ալցեստը նրան իսկույն մի ապտակ տվեց:

— Քթի՛ն,— աղաղակեց Էդը,— քթի՛ն

տուր:

Անյանն սկսեց բղավել ու արտասվել: Ասում էր, որ ինքը չափազանց դժբախտ է, որ իրեն ուզում են սպանել, և թավալվեց հատակին: Այդ ժամանակ Մեքսանը, Իմ ձեռքին քանոն կար, իսկ նրա ձեռքին՝ գրչատուփ: Փորձն ուղղակի հրաշալի էր ընթանում, բայց հանկարծ ուսուցչուհին բղավեց.

— Դադարեցրե՛ք: Նստե՛ք ձեր տեղերը:



Ժոաշենը և Ժոֆրուան սկսեցին ամբոխ ներկայացնել: Նրանք գոռում էին.

— Նայեցե՛ք, սա Մատնաչափիկն է ու Կոշկավոր կատուն:

Իսկ ես կռվի էի բռնվել Ռյուֆուսի հետ: Ներկայացումը հանվում է: Ես չեմ ուզում, որ դիրեկտորն այս կրկեսը տեսնի:

Մենք պապանձվեցինք:

Կյանքումս առաջին անգամ էի տեսնում, որ ուսուցչուհին պատժի դիրեկտորին:

Թարգմ. Լ. ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ



# ՏԱԹԵՎԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

Սյունիքը (Զանգեզուրը) դարեր ի վեր եղել է Հայաստանի կրթության, գիտության և մշակույթի կենտրոններից մեկը: Սյունյաց դպրոցները հայտնի էին դեռ Մեսրոպ Մաշտոցի ժամանակներից: Այստեղ են գործել խոշոր մանկավարժներ Վրթանես Քերթողը և Մաթուսաղան, երաժիշտներ Ստեփաննոս Սյունեցին և նրա քույր Սահականդուխտը:

X դարի սկզբից սկսում է մեծ դեր խաղալ Տաթևի վանքում հաստատված բարձր տիպի դպրոց-վարժապետարանը: Այս նոր ուսումնական կենտրոնում հավաքվում են շուրջ 500 միաբան, իսկ հետագայում նրանց թիվը հասնում է 1000-ի, որոնց զգալի մասը կազմում էին Հայաստանի տարբեր ծայրերից եկած աշակերտները: Նրանց համար կառուցվել էին հատուկ կացարաններ: Այդ շինության հետքերը մինչև օրս պահպանվել են Տաթևի վանքի մոտակայքում:

Ուսումնական կենտրոնը Տաթևում գործել է մինչև XII դարի վերջը: Այնուհետև թուրքերի, թաթարների բարբարոսական արշավանքները ավերեցին Տաթևի վանքը: Բայց կրթության լույսը չմարեց Սյունիքում: Նրա գավառներից մեկում՝ Վայոց ձորում, XIII դարի 80-ական թվականների սկզբին, հռչակավոր գիտնական Ներսես Մշեցու կողմից հիմնադրվեց միջնադարյան Հայաստանի խոշորագույն համալսարաններից մեկը՝ Գլաձորի համալսարանը:

Գլաձորի համալսարանի անկումից հետո, XIV դարի 40-ական թվականներին բազմատաղանդ գիտնական ու մանկավարժ Հովհան Որոտնեցինստիպված է լինում իր աշակերտների հետ, ապաստան փնտրելու համար, երկար տարիներ շրջել Արևելյան Հայաստանի քարքարոտ ճանապարհներով: Այդ ծանր պայմաններում համալսարանը չկործանվեց, շարունակեց գործել տարբեր վայրերում՝ Հերմոնի վանքում, Որոտնավանքում, Ապրակունիսում, Ծահապունիքում:

1386 թ. մահացավ Հովհան Որոտնեցին, և նոր րաբունապետ (այսինքն՝ ուսուցչապետ) ընտրվեց նրա աշակերտ Գրիգոր Տաթևացին: Նա համալսարանը տեղափոխեց Տաթևի վանք,

որն այդ ժամանակվանից դարձավ Հայաստանի ամենախոշոր կրթական կենտրոնը:

Օգտվելով իր հանճարեղ ուսուցչի՝ Հովհան Որոտնեցու փորձից, Գրիգոր Տաթևացին մշակեց համալսարանի ներքին կառուցվածքը և առարկաների դասավանդման մեթոդները:

Համալսարանն ուներ 3 ուսումնարան (բաժանմունք): Ուսումնասիրվում էին գրչության արվեստ, երաժշտություն, մանրանկարչություն, փիլիսոփայություն, քերականություն, մանկավարժություն, գրականություն, պատմություն, մարդակազմություն, քիմիա, աշխարհագրություն, թվաբանություն և այլ հասարակական ու բնական գիտություններ:

Տաթևի սաների հիմնական դասագրքերից մեկն էր Գրիգոր Տաթևացու «Գիրք հարցմանց» միջնադարյան նշանավոր հանրագիտարանը, որտեղ հեղինակը հարց ու պատասխանի ձևով շարադրել է իր բազմակողմանի աստվածաբանական, փիլիսոփայական, մանկավարժական, քաղաքական, տնտեսական, հոգեբանական, տրամաբանական և բնագիտական հայացքներն ու գիտելիքները:

Համալսարանում կիրառվող ուսուցման մեթոդները իրենց նշանակությունը չեն կորցրել առ այսօր: Դրանց թվում են՝ դիդակտիկ նյութեր օգտագործելը կամ նկարելը, խմբովին բարձրաձայն կարդալը, յուրաքանչյուր աշակերտին անհատական մոտեցում ցուցաբերելը և այլն:

Համալսարանի ղեկավարները մեծ ուշադրություն էին դարձնում աշակերտների ֆիզիկական դաստիարակությանը: Անընդմեջ պատերազմների պայմաններում երիտասարդների ֆիզիկական պատրաստականությունը մեծ կարևորություն ուներ:

Համալսարանում սովորում էին տարրական և միջին կարգի դպրոցներն ավարտած աշակերտները: Նրանց ուսումը Տաթևում տևում էր 4—7 տարի, որից հետո վարդապետական կոչում էին ստանում:

Գրիգոր Տաթևացին մինչև իր կյանքի վերջը (1409 թ. դեկտեմբերի 27) գլխավորել է համալսարանը, վարելով փիլիսոփայության, աստվածաբանության և քերականության դասընթացներ:

Այդ դասընթացները այնպիսի համբավ էին ձեռք բերել, որ Տաթևում սովորելու էին գալիս բովանդակ Հայաստանից, Կիլիկիայից և արտասահմանյան հայաբնակ գաղութներից: Ուսումն ավարտելուց հետո Տաթևի սաների մի մասը մնում էր համալսարանում և շարունակում իր ուսուցիչների գիտական ու մանկավարժական գործունեությունը:

Մյուս շրջանավարտները ցրվում էին տարբեր գավառներ: Դպրոցներ էին հիմնում Հայաստանի տարբեր անկյուններում, տարածելով կրթությունն ու գիտությունը հալածված և կողոպտված երկրում: Տաթևի համալսարանի հետ էին կապված բազմաթիվ դպրոցներ Սյունիքում և Արցախում, Այրարատում, Շիրակում, Գուգարքում և Տայքում, Ուտիքում և Աղձնիքում, Քաջբերունիքում և Երզնկայում:

Տաթևի համալսարանում սովորել և աշխատել են բազմաթիվ գիտնականներ, բանաստեղծներ ու գրիչներ: Նրանց թվում են փայլուն տաղերգու Առաքել Սյունեցին, տաղանդավոր պատմիչ և թարգմանիչ Մատթեոս Ջուղայեցին, հայտնի մանկավարժ Գևորգ Երզընկացին:

Տաթևի համալսարանի գործունեությունը միայն ուսմամբ չէր սահմանափակվում: Այստեղ տարբեր գիտությունների վերաբերյալ գրականություն էր ստեղծվում, արտագրվում էին հայ և օտարալեզու հեղինակների աշխատությունները: Համալսարանում տարիներ շարունակ գործել է գրչության կենտրոն: Գրչության արվեստը Տաթևում ամենասիրված առարկաներից է եղել: Գրչության տեսական դասընթացը և գործնական պարապմունքները վարում էր Գրիգոր Տաթևացին, որը հաճախ ինքն էր մեծ վարպետությամբ մակագրում իր աշխատությունները:

Տաթևի հմուտ և ջանասեր գրիչների թվում կարելի է նշել Թումա Կաֆայեցուն, Հունանին, Սարգսին, Հակոբ Ուշտունցուն, Արիստակես Սեբաստացուն և շատ ուրիշների, որոնց արտագրած ձեռագրերը պահպանվել են մինչ օրս և գտնվում են Մաշտոցի անվան մատենադարանում: Ձեռագրերը կազմվում, զարդարվում և պատրաստվում էին ընթերցման համար: Տաթևի մասնագետները իրենք էին պատրաստում բոլոր գրենական պիտույքները, այդ թվում մագաղաթը, ներկերն ու թանաքները:

Գրիչների մեծամասնությունը, և առաջին հերթին Գրիգոր Տաթևացին, տաղանդավոր մանրանկարիչներ են եղել: Համալսարանի նկարիչները ստեղծեցին Տաթևի մանրանկարչության դպրոցը, որը մեծ տեղ է գրավում հայկական միջնադարյան արվեստում:

XV դարի ավերիչ արշավանքները, Հայաստանի քաղաքական և տնտեսական ծանր վիճակը անկման հասցրին Տաթևի համալսարանը: Սակայն նրա կարճատև, բայց փայլուն գործունեությունը խորը հետք թողեց Հայաստանի գիտական և մշակութային զարգացման պատմության մեջ:

**ՎԱՀԱՆ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
«Էրեբունի» թանգարանի ավագ գիտաշխատող

ՇԱՎԱՐՇ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# Ինչ գույնի է արևը...

Կարո՞ղ է, արդյոք, արեգակը կապույտ ու թափանցիկ լինել: Շատերը կասեն՝ ոչ:

Բայց նրանց կառարկի Կարեն Ջհանգիրյանը և իր ասածը հաստատելու համար ցույց կտա «Սևանը կեսօրին» աշխատանքը, որի հեղինակն ինքն է:

Կարենի կարծիքով Սևանը աշխարհի ամենակապույտ լճերից մեկն է: Սևանի կապույտն այնքան պայծառ է, որ արևին է փոխանցվել ու փոխել արևի գույնը:

Կարենի ընկերը՝ Վալտերը, արևը դեղին է նկարել: Նա էլ այդպես է զգացել և պատկերել իր զգացածի պես:

Երբ դիտում ես Օլգա Ադամյանի «Լավաշ են թխում» աշխատանքը, ասես օդի մեջ թարմ հացի բուրմունք է տարածվում:

Օլգան պատկերել է իր տատիկին ու մայրիկին: Մեկը լավաշն է թխում, մյուսը գրտնակով բացում, հարթեցնում է խմորի գունդը: Տատիկը կռացել է թոնրի վրա: Նրա դեմքը կարմրին է տալիս: Ուրեմն թոնիրը բարկ է, կրակն է շլշլում ներսում: Բացած գունդը պետք է արագ խփես թոնրի շրթին ու արագ դուրս քաշես, թե չէ կվառվի:

Պատանի նկարչուհին լավ տիրապետելով գուաշով աշխատելու տեխնիկային՝ ստեղծել է կենցաղային այդ նկարը:

Մեծանում ու կառուցվում է Եղվարդ ավանը: Լալա Կարապետյանը փորձում է պատկերել շինարարական հրապարակներից մեկը:

Աշնանը ավանի 2-րդ դպրոցի իր ընկերների հետ բերքահավաքի աշխատանքներին մասնակցեց նաև Նվարդ Հովհաննիսյանը: Նա դաշտ գնաց՝ իր հետ տանելով թուղթ ու մատիտը: Այնտեղ ծնվեցին մի քանի էսքիզներ, որոնք այժմ նա օգտագործում է իր «Բերքահավաք» նկարում:

Նաիրիի շրջանի գեղարվեստի դպրոցի (դիրեկտոր՝ Նորիկ Հարությունյան) սաները արև են պատկերում, հայրենի բնաշխարհը, նրա մարդկանց, կյանքն ու աշխատանքը:





# Պահմտոցի՝ ընկերների թիկունքում

**Խմբագրությունն առաջարկում է այս հոդվածը կարդալ ձեր դասարանում, ձեր ջոկատում, քննարկել ու արձագանքել՝ անհատապես կամ խմբովին: Խմբագրությանն ուղարկված ձեր հոդվածներում չսահմանափակվեք լոկ դատողություններ անելով, այլ փորձեք ձեր ասածը հիմնավորել ձեր դասարանի, ձեր ընկերների և ձեզ հետ առնչվող կոնկրետ դեպքերի օրինակներով:**

Դպրոցը շրջապատված է պարսպով: Պարսպի վրայի դարպասներից բացի դպրոցի բակը մտնելու համար աշակերտներն օգտվում են նաև պարսպի վրա բացված մի այլ, երկրորդական մուտքից:

Այս փոքրիկը, որ երևի առաջին դասարանցի է, միշտ դպրոց է գալիս իր մայրիկի ուղեկցությամբ և հենց այս մուտքով: Երիտասարդ մայրիկը պայուսակը փոխանցում է դստրիկին և կանգ է առնում: Փոքրիկը դժվարությամբ տանում է իր պայուսակը և մերթ ընդ մերթ ետ-ետ է նայում, կարծես սպասում է, որ մայրը ինչ-որ բան դեռ ասելու է:

— Գնա՛,— ժպտում է մայրը,— ուշադիր կլինես, տնային աշխատանքների տեղերը չմոռանաս նշել:

Փոքրիկ աշակերտուհին շարունակում է իր ճանապարհը: Դպրոցի շենքի անկյունում նա մի անգամ էլ է ետ շրջվում, մայրը դեռ կանգնած է: Ձեռքով միմյանց ցտեսություն են մաղթում: Այսպես քանի՜-քանի աշակերտներ են եկել-անցել դպրոցի պարսպի վրայի այս փոքրիկ մուտքով, մտել մեծ կյանք: Ու քանի՜-քանիսն են դեռ գալու-գնալու:

Աշակերտների հոսքը դեպի դպրոց շարունակվում է: Իսկ ես դեռ մտածում եմ փոքրիկ առաջին դասարանցու մա-

սին։ Ես անծանոթ եմ նրան։ Ամեն առավոտ հանդիպում եմ։ Եվ ինձ թվում է, որ նրա տետրերի մեջ միայն «չորս» ու «հինգ» գնահատականներ են։ Երևի ամեն անգամ դպրոցից տուն վերադառնալով, պատասխանում է ծնողների հարցերին՝ այսօր ի՞նչ գնահատականներ ես ստացել, ի՞նչ տնային հանձնարարություններ ունես։ Եվ անպայման նրա մեջ կամ արդեն արմատացել, կամ արմատանում է պատասխանատվության զգացումը։ Հենց այս զգացման առկայությունն է, որ երեխային ստիպում է բակում կիսատ թողնել ֆուտբոլը, տուտուճիկը, չլիկ-դաստան և վազել տուն, նստել գրասեղանի առաջ, խաղի աշխարհից տեղափոխվել դասի աշխարհը։

Դպրոցի զանգն արդեն հնչել է։ Եռնամուտքի առջև հայտնվում է մի տղա։ Ծորի օձիքը ցուցադրաբար վեր է քաշել։ Ծխում է։ Հազալով քայլում է։ Նրան ընդառաջ է գալիս մեկ ուրիշը։ Ինչպես հետո իմացա, օձիքը վեր քաշած տղան և նրան մոտեցողը տասներորդցիներ են։ Ասում եմ՝ հետո, որովհետև այդ պահին ոչ մի նշան չկար, որով կռահեիր, որ նրանք դպրոցականներ են։ Պայուսակ չունեին։ «Արա, մի հատ պաբիրոզ տուր»,— դիմեց մոտեցողը և անփույթ ավելացրեց. «Հավես չկա դասի նստելու», և պարզ դարձավ, որ աշակերտներ են։ Երևի առավոտյան տնից դուրս էին եկել, ծնողների մոտ կասկած չթողնելով, որ դպրոց են գնում։

Դասամիջոցի զանգը հնչում է։ Միջանցքները լցվում են աղմուկով։ Հոկտեմբերիկները թիթեռնիկների պես թռչկոտում են։ Բոլորը սիրելի, բոլորը պայծառ աչիկներով, պայծառ ժպիտներով։ Կարո՞ղ են սրանց մեջ գտնվել այնպիսիները, որոնք տասը տարի անց, տանը խաբեն, թե դպրոց են գնում ու ծխախոտն ատամների արանքում սեղմած՝ թափառեն դպրոցի շուրջը։

Ուսուցչուհիներից մեկին մի այսպիսի հարց եմ տալիս. չէի՞ք համեմատի այսօրվա և, ասենք, տասը տարի առաջ դպրոցն ավարտած ձեր աշակերտներին։ Եվ պատասխանն ահա թե ինչ է լինում.



Նկ. ՌՈՒԲԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Դրանք տարբեր սերունդներ են, և համեմատելը, չգիտեմ, որքանո՞վ ճիշտ կլինի: 10 տարի առաջ ուսման նկատմամբ աշակերտների հետաքրքրքրությունն ավելի մեծ էր, քան հիմա: Բայց եթե նախկինում, ասենք, 8-րդ դասարանցին դեռ երեխա էր, նույնիսկ ինչ-որ տեղ՝ միամիտ երեխա, ապա այժմ նույն տարիքում աշակերտներն ավելի հասուն են և շրջապատում տեղի ունեցող երևույթները ճիշտ գնահատելու ավելի մեծ կարողություններ ունեն:

— Ի՞նչ եք կարծում, լա՞վ է այդ վաղաժամ հասունացումը,— հարցնում եմ:

— Ճիշտն ասած, դժվարանում եմ պատասխանել:

Դպրոցի դասղեկներից մեկը տասներորդցիներից բողոքում է, որ շաբաթօրյակից փախել և գնացել են կինո: Տղաներից մի երկուսին նկատել, ձայն է տվել, բայց չլսելու են տվել: Իհարկե, տասներորդցիները հաջորդ օրը դիրեկտորի անձնական հսկողության տակ իրենց բաժին գործն արել ու իրենց «բաժինն» ստացել են: Սակայն, դժվար չէ երևակայել, թե նախորդ օրվա այդ «քաջերը» ինչպես են հետո ականջները կախ, լուռումունջ գործի լծվել: Ուրեմն արժե՞ր մի կինոյի համար ողջ դպրոցի աչքի առաջ ստորացած վիճակում աշխատել: Ավելի լավ չէ՞ր ողջ աշակերտության հետ պատվով կատարել հանձնարարված գործը, քան հետո անել նույնը անպատիվ ձևով, հսկողության տակ, նույնիսկ իրենցից փոքրերի ծաղրական հայացքների ուղեկցությամբ:

Իրո՞ք այժմյան տասներորդցիներն ավելի հասուն են, նրանց այս արարքի մեջ երևում է նրանց հասունությո՞ւնը, խելքով շարժվելու կարողությո՞ւնը:

Դասամիջոցը վերջացել է: Ողջ դըպրոցը դասի է նստած: Հիմա այս դասարանների պատերի ներսում քանի՜-քանիսն են ձեռքերը հոգնեցնելու աստիճան վերև պարզում, որ իրենց դաս հարցնեն, և քանի՜-քանիսն են մըտքերում «աստված ջան» կանչում, որպեսզի հանկարծ ուսուցչի գրիչը կանգ չառնի իրենց ազգանվան դիմաց և քանի՜-քանիսի համար էլ բացարձակապես միևնույնն է՝ իրենց դաս կհարցնե՞ն, թե՞ ոչ: Թերևս նրանց ծնողները նույնպես ամեն ինչ արել են, որպեսզի իրենց երեխաները լավ սովորեն, մայրերն ամեն առավոտ գեղեցիկ արդուկել են նրանց ճերմակ վերնաշապիկները, սանրել են մազերը, փոխել թաշկինակը, տնից դուրս գալուց առաջ մի վերջին անգամ իրենց երեխայի հետ արտասանել անգիրը: Իհարկե, չի բացառվում, որ աշակերտներից մի քանիսը այդպիսի ուշադրությունից զրկված են եղել ու տարիների ընթացքում ծնողի հսկողության բացակայությունը իր բացասական հետևանքներն է ունեցել: Դրանից զատ, ուրիշ ի՞նչ պատճառներով աշակերտը կարող է անհոգ դառնալ դասերի նկատմամբ: Պատճառները կարող են լինել շատ տարբեր: Ահա մի օրինակ, ավելի ճիշտ՝ երևակայական մի նկարագրություն-բացատրություն: Ասենք, ֆիզիկայի հերթական դասն է: Աշակերտը պատրաստ չէ դասին: Նախորդ օրը երեկոյան ծնողները շատ զբաղված են եղել և չեն կարողացել դասը նրան բացատրել: Կամ էլ գուցե պարզապես ի վիճակի չեն եղել բացատրելու: Դասը մնացել է անհասկանալի: Առավոտյան աշակերտը ֆիզիկայի ժամին թաքնվել է առջևում նստած ընկերոջ թիկունքում, խուսափել ուսուցչի հայացքից և զանգը տալուց հետո ուրախացել, որ իրեն դաս չհարցրին: Սակայն անհասկանալի մնացած դասի պատճառով չի յուրացվում նաև հաջորդ դասը: Իսկ աշակերտը շարունակում է թաքնվել ընկերոջ թիկունքում, տանն էլ ծնողները շարունակում են զբաղված լինել: Օրեցօր մի օր նա սկսում է բոլորովին չըհասկանալ, թե ֆիզիկայի դասին ինչի մասին են խոսում ուսուցիչն ու իր ընկերները: Դասը նրա համար դառնում է ձանձրալի: Իսկ չէ՞ր կարելի խուսափել դրանից: Ինչու չէ: Անհրաժեշտ էր հենց առաջին օրը ուսուցչին կամ ընկերոջը խնդրել, որ օգնեն հասկանալ չհասկացածը: Ամաչելու բան չկա: Աշակե՛րտ, մի՛ ամաչիր ուսուցչին հարցեր տալուց:

Զանգը հնչել է: Աշակերտները դըպրոցից վերադառնում են տուն: Ոմանց սպասվում են հարցեր՝ «Այսօր ի՞նչ գնահատականներ ես ստացել», «Ի՞նչ տընային հանձնարարություններ ունես»: Իսկ «ոմանց» նման հարցեր գուցե չեն սպասվում: Ոմանք շարունակելու են պահմտոցին՝ ընկերների թիկունքում:

ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ




# «ԿԱՐՄԻՐՆԵՐԸ» ՀԱՂԹԵՑԻՆ

Յոթ կիլոմետր երկարության վազքուղին չըհաղթահարած նորեկները ոչ միայն չհուսահատվեցին, այլ նույնիսկ մրցման հրավիրեցին փորձված վարպետների խմբին: Վարպետներն ընդունեցին այդ հրավերը և մեծահոգաբար համաձայնեցին, որ մեկնարկին մասնակցեն բոլոր 2187 նորեկները, իսկ իրենցից՝ միայն 512 հոգի: Պայմանավորվեցին հաղթող ճանաչել այն թիմը, որի յոթերորդ կիլոմետրի եզրագիծը հատող անդամների թիվը ավելի մեծ կլինի:

Նորեկները հագել էին կանաչ, վարպետները՝ կարմիր մայկաներ: Առաջին կիլոմետրը, ինչպես նախորդ անգամ, հաղթահարեցին 729 նորեկ: Ինչ վերաբերում է վարպետներին, ապա առաջին կիլոմետրը նրանցից հաղթահարեցին 256-ը: Երկրորդ կիլոմետրի վերջում «կանաչներից» մնացին 243-ը, «կարմիրներից»՝ 128-ը: Երրորդ կիլոմետրի վերջում «կանաչների» թիվը դարձավ 81, իսկ «կարմիրներինը»՝ 64: Նորեկների երկրպագուների տրամադրությունն ընկավ: Նրանք հասկացան, որ «կանաչների» թիվն ավելի արագ է նըվազում, քան «կարմիրներինը»: Երկրպագուները չսխալվեցին. չորրորդ կիլոմետրի վերջում արդեն «կանաչներից» վազքուղու վրա մնաց միայն 27 մարդ, իսկ «կարմիրներից»՝ 32: Ուրեմն չորրորդ կիլոմետրի վերջում արդեն վարպետների թիմը ստացավ թվային գերակշռություն: Մնացած երեք կիլոմետրերի վերջում այդ գերակշռությունը դարձավ ավելի ըզգալի, հինգերորդ և վեցերորդ կիլոմետրերի վերջում «կանաչների» թիվը դարձավ նախ 9, ապա՝ 3, իսկ «կարմիրներինը»՝ 16, ապա՝ 8: Վերջապես յոթերորդ կիլոմետրի վերջում մնացին մեկ «կանաչ» և 4 «կարմիր» մարզիկ: Եվ, ինչ խոսք, «կարմիրները» հաղթեցին:

Եթե ամեն մի կիլոմետրի վերջում վազքուղու վրա մնացած մարզիկների թվերը համապատասխան կարգով գրենք հաջորդաբար, ապա «կանաչների» համար կստացվի՝ 2187, 729, 243, 81, 27, 9, 3, 1: «Կարմիրների» համար՝ 512, 256, 128, 64, 32, 16, 8, 4 շարքերը: «Կարմիրների» շարքի յուրաքանչյուր հաջորդ անդամի հարաբերությունը նախորդին հավասար է մեկ երկրորդ, իսկ «կանաչների» շարքի համապատասխան անդամների հարաբերությունը՝ մեկ երրորդի: Պարզվում է, որ այդ հարաբերություններից ստացված թվերի չընչին տարբերությունը բավարար է ոչ միայն չեզոքացնելու մրցման սկզբում եղած հսկայական քանակական տարբերությունը, այլև հաղթանակ ընձեռելու գրեթե 4 անգամ ավելի փոքր թիվ կազմող «կարմիրներին»:

Վերջիններիս հաղթանակի համար անհրաժեշտ էր և բավարար, որպեսզի վազքուղին 4 կիլոմետրից պակաս չլիներ, 4 կիլոմետրից ավելի փոքր հեռավորությունների վրա կհաղ-

թանակեին «կանաչները»:

Կանաչ, կարմիր ճառագայթների վարքի և «կանաչ», «կարմիր» վազորդների միջև համանմանություն կա: Կանաչ ապակին լավ է բաց թողնում մուգ կարմիր ճառագայթները, ընդ որում՝ որքան մեծ է կանաչ ապակու հաստությունը, այնքան ավելի է մեծանում մուգ կարմիր ճառագայթների բացթողման տարբերությունը: Բայց հետաքրքիր է: Ինչո՞ւ բարակ շերտ ապակին թվում է կանաչ, մուգ կարմիր ճառագայթներն ավելի լավ է բաց թողնում, քան կանաչները: Եթե ուշադիր դիտեք յոթ գույների հաջորդականությունը, ապա պարզ կտեսնեք, որ կանաչն ավելի վառ է, քան մուգ կարմիրը («կանաչ» վազորդների թիվն ավելի մեծ էր, քան «կարմիրներինը»): Բարակ շերտ ապակու դեպքում (4 կիլոմետրից ավելի փոքր վազքուղի) մուգ կարմիր և կանաչ ճառագայթների կլանման տարբերությունը դեռ այնքան էլ նկատելի չէ, որպեսզի չեզոքացնի կանաչ ճառագայթների սկզբնական վիճակի վառ շեշտվածությունը: Այստեղ դեռ հիմնական դերը կանաչ ճառագայթներինն է, որը և պայմանավորում է համապատասխան գույնը:

Ապակու հաստությունը մեծացնելու դեպքում, Բուգերի օրենքի համաձայն, անցնող կանաչ ճառագայթների «թիվն» ավելի արագ է նվազում, քան մուգ կարմիրներինը («կանաչ» և «կարմիր» վազորդների թիվը 4 կիլոմետրից մինչև եզրագիծ): Բավականին մեծ հաստության դեպքում այդ տարբերությունն այնքան մեծ է արդեն, որ գրեթե լրիվ չեզոքացնում է կանաչ գույնի սկզբնական ցայտունությունը և իրականում յոթ հաջորդական գույների փոխարեն մնում է լոկ մուգ կարմիր մի շերտ:

Պարզ է. որքան ավելի շիկացնենք կրակխառնիչի ծայրը, այնքան ավելի պայծառ կլինի այն: Նկատել եք, իհարկե, որ էլեկտրական լամպի թելիկը եթե վատ է շիկանում, ապա առաքում է կարմրավուն լույս, իսկ լավ շիկանալու դեպքում՝ սպիտակին ավելի մոտ լույս: Նշանակում է, ջերմաստիճանի բարձրացման դեպքում կանաչ և կապույտ ճառագայթների պայծառությունն ավելի արագ է աճում, քան կարմիրներինը: Ուրեմն բարձր ջերմաստիճանում սպեկտրի կանաչ և մուգ կարմիր մասերում պայծառության տարբերությունը մեծ է և այն հնարավոր չէ չեզոքացնել ապակու մեջ կլանելով: Ահա թե ինչու բարձր ջերմաստիճաններում շիկացած մարմնի ճառագայթման գունափոխությունը դիտելու համար հարկավոր է ապակու առավել հաստ շերտ:





# ՄԱՐԴԸ ՇՆԱՁԿԱՆ ՃԱՇԱՑԱՆԿՈՒՄ ՉԷ

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



Շնաձկների բազմաթիվ տեսակներ կան, սակայն արտաքինով նրանք առանձնապես չեն տարբերվում միմյանցից: Եվ նրանց մասին սարսափելի պատմություններն էլ չափազանցված են:

Ամերիկայի Ֆլորիդա նահանգի բնակիչ Ջոն Շաստերը հավատացնում է, որ այդ կատաղի գիշատիչներն իրենց բնույթով այնքան վախկոտ են, որ երբ ցանցի մեջ են ընկնում, «վախից դողում են», և եթե ժամանակին միջոցներ չձեռնարկվեն, շնաձուկը կարող է մահանալ նյարդային շոկից առաջացած ինֆարկտից: Այդ պատճառով, երբ ֆլորիդյան օվկիանոսային ակվարիում են բերում նոր շնաձուկ, Շաստերը բռնում է նրան սպիտակ լողակների տակից և «զբոսանքի տանում» լողավազանում: Գլխավորը՝ պահը բաց չթողնելն է, ասում է Շաստերը, երբ շնաձուկը ուշքի գա և ուշադրություն դարձնի ձեզ վրա, բավական է փոքր-ինչ հապաղեք, և նա հանգիստ կպոկի ձեր ձեռքը, որպեսզի խա-

ղաղեցնի իր գրգռված նյարդերը:

Վերջին ժամանակներս Կուբայի գիտնականները ուսումնասիրում են այդ «արյունարբու կենդանի տորպեդների» վարքուբարքը: Արդեն փորձեր են արվում նրանց նույնիսկ ժողովրդական տնտեսության մեջ օգտագործել:

Համաշխարհային օվկիանոսում ապրում են մոտ երկու հարյուր հիսուն տեսակի շնաձկներ: Եվ միայն նրանցից մի քանիսն են մարդու համար վտանգավոր: Կուբայական կղզիների մոտ բնակվող երեսունհինգ տեսակի շնաձկներից, ինչպես պարզվել է, միայն վեցն են վտանգավոր մարդու համար:



Մարդը, ինչպես ասում են, չի մտնում շնաձկան «ճաշացանկի» մեջ: Պատահում է, որ նրանք հարձակվում են մարդու վրա, սակայն ոչ սովածության պատճառով: Ավելի հաճախ մենք ինքներս էլ այդ չհասկանալով, նրանց ինչ-որ բանով գրգռում ենք:

ԱՄՆ-ում գոյություն ունի միջազգային գիրք, որի մեջ գրանցվում են մարդու վրա շնաձկան հարձակման դեպքերը: Մեր դարի սկզբից մինչև 1979 թվականը գրանցվել է հազար վեց հարյուր հիսուներկու դեպք: Մինչև 1959 թվականը Կուբայական կղզիների մոտ գրանցվել է մարդու վրա շնաձկան հարձակման տասնչորս դեպք, իսկ 1959 թվականից մինչև այսօր Կուբայի գիտությունների ակադեմիայի օվկիանոսագիտության ինստիտուտը գրանցել է ընդամենը... մեկ դեպք: Ի դեպ, Կուբայի ջրերում շնաձկների «ագրեսիվ» ակտիվությունը բավականին փոքր է: Գիտնականները գտան պատճառը, պարզվեց, որ ողբերգությունների հիմնական պատճառ հանդիսացող խակետոն վերցե շնաձուկը քիչ է այցելում Կարիբյան ծովի ջրերը:

Կուբացի գիտնականների կարծիքով ծովափին ապրող, հանգստացող կամ աշխատող մարդկանց վրա շնաձկների հարձակման և այդ մարդկանց կայծակնահար լինելու հավանականության միջև պետք է հավասարության նշան դնել:

Այս ամենը, իհարկե, չի նշանակում, որ շնաձկների հետ վարվելիս զգուշություն չի պահանջվում:

Շնաձկները մեծ մասամբ բազմանում են ձվադրմամբ: Օրինակ կատվաշնաձուկը դնում է երկուսից մինչև քսան ձու, որոնք ունենում են ամուր պատյան: Պատյանի անկյուններից ձգվող երկար թելերի միջոցով ձուն կառչում է ստորջրյա բույսերից: Զարգացող սաղմը սնվում է իր դեղնուցապարկի պաշարներով: Մեկ տարուց պատյանը պատռվում է և նորածին շնաձուկը գնում է կակղամորթեր և խեցեմորթեր որսալու:

Շնաձկների մասին այնպիսի կարծիք է տարածված, թե իբր նրանք անպայման պետք է լողան, այլապես սուզվում են և իջնում ծովի հատակը: Այդպես չէ: Շնաձկների որոշ տեսակներ սովորություն ունեն երկար ժամանակ պառկել ծովի հատակին: Դա կարծես մի տեսակ երկարատև նիրհ է անհանգիստ շարժումներից հետո:

Շնաձկանը նաև անվանում են ծովերի վագր. սակայն այդ վագրն այնքան սարսափելի ու վտանգավոր չէ, ինչպես պատմվում է լեգենդներում:







Ճիշտ լրացնելուց հետո ընդգծված վանդակներում կկարդաք գեղանկարչական ժանրի տեսակ:

1. Ռուս անվանի գեղանկարիչ, «Պոմպեյի վերջին օրը» կտավի հեղինակը:

2. Նկարիչների և քանդակագործների համար իր կեցվածքով օրինակ ծառայող հատուկ զբաղմունքի անձ:

3. Նկարչական պիտույք:

4. 19-րդ դարի հայականավոր նկարիչ, որի միջոցով դիմանկարը ձևավորվել է որպես գեղանկարչության առանձին ժանր:

5. Ֆրանսիացի հայտնի նկարիչ, «Ազատությունը բարիկադների վրա» հայտնի կտավի հեղինակը:

6. Հայ սովետական նկարիչ, «Սասունցի Դավիթ» էպոսի անգերազանցելի ձևավորողը:

7. Կերպարվեստի տեսակ:

**«ՊԻՈՆԵՐ» № 12-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ՝ 200 ԿՄ:**

## ԺԱՄԱՆՑ










ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԿԱԼԵՆՑ (1910—1967 թթ.): ՆԱՏՅՈՒՐՄՈՐՏ 1960 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։ Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հանձնված է տպագրության 23.11.1984 թ.։ Ստորագրված է տպագրության 30.01.1985 թ.։ ՎՖ 05139։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 68552։ Պատ. 2257։ Գինը՝ 15 կ.։

**Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2։**

Сдано в набор 23.11.84 г. Подписано к печати 30.01.85 г. Формат 70×100 1/16. ВФ 05139. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 68552. Заказ 2257. Цена 15 коп.

**Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.**







# Ուշադրությո՛ւն

Կապի մինիստրությունը հիշեցնում է. մեր հանրապետությունը եղբայրական հանրապետություններից և արտասահմանից տարեկան ստանում է 102 և առաքում 86 մլն. նամակ: Այս ահռելի քանակը տեսակավորելու, տեղափոխելու և ժամանակին հասցեատիրոջը հասցնելու համար փոստի աշխատողները մեծ ու դժվարին աշխատանք են կատարում: Կիսատ-պռատ կամ սխալ հասցեներով նամակները լրացուցիչ դժվարություններ են ստեղծում նրանց համար: Եթե ուզում եք ձեր առաքումը տեղ հասնի, հասցեն գրեք ստույգ և ընթեռնելի, իսկ ետադարձ հասցեի սկզբում պետք է նշեք ձեր փոստային ինդեքսը: Հասցեատիրոջ փոստային ինդեքսը անհրաժեշտ է ճիշտ լրացնել: Ծրարի հակառակ երեսին ցույց են տրված թվերի գրության ճիշտ ձևերը, որոնց պահպանումը պարտադիր է ծրարների տեսակավորումը կատարող մեքենաների աշխատանքի համար:




**Մեր խմբագրության փոստային ինդեքսն է՝**





Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ.:

**ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.** **ԻՆԴԵՔՍ՝ 77806**